

# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԸ

*ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ*

Կարմիր էր բանակը,
Որովհետև կարմիր էր
Դրոշակը,
Որին շատ զինվորներ
Իրենց արյունը խառնեցին,
Իրենց հավատը:

Կարմիր էր բանակը,
Որովհետև ապրում էին դեռ
Սպիտակն ու Կոլչակը,
Եվ նրանց մայրամուտն էլ
Կարմիր էր:

Կարմիր էր բանակը,
Որովհետև անցել էր
Գիշերը,
Ծնվել էր արեգակը,
Եվ բանակը քայլում էր
Արեգակի միջով:

Կարմիր է բանակը,
Կարմիր է դրոշակը,
Կարմիր է արեգակը:

Նկ. ՋԱՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

# ԿԱՐՄՐԱԽԱՅՏԸ

ՌՈՒԲԵՆ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Նկ. ՆԻԿՈՂԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Քարը կրիայի էր նման, պատյանի ամենավերին մասը դուրս էր ցցվել ջրից, բայց թաց էր, որովհետև արևը չէր հասցնում չորացնել ջրացայտքերը: Երբեմն փրփուր էր ելնում կրիայի շալակը և մինչև վրա կհասներ հերթական ջրացայտքը, պտույտ եկող պղպջակների մեջ ծիածաններ էին բռնկվում: Մարում ու բռնկվում էին, մարում ու բռնկվում էին ծիածանները, և տղային այնպես էր թվում, որ ոչ թե կրիայի պատյանին զարկվող ջուրը, այլ ծիածաններն են թշշում: Որովհետև տաք էին ծիածանները:

Նա ուզում էր ոտքը պարզել դեպի կրիան, ոտնամատերով զգալ ջերմությունը, բայց հենց շարժվում էր տեղից, չքվում էին ծիածանները: Չէին մարում, չքվում էին իսպառ, կարծես չէին եղել, ինչպես աստղերն են չքվում, երբ հայտնվում է արևը: Տղան համոզված էր, որ ճիշտ աստղերի նման են չքվում ծիածանները, այսինքն՝ ոչ թե չքվում, այլ պարզապես չեն երևում, թեև,— կարող ես ստուգել,— մնում են իրենց տեղերում: Չէ՞ որ հաջորդ գիշերներին աստղերն, իրոք, իրենց տեղերում են: Չէ՞ որ ամեն շարժվելուց հետո ծիածանները կրկին ցոլցլում են պղպջակների մեջ:

Վերջապես նա տեսավ կարմրախայտ ձկանը, որ հոսանքն ի վեր լողալով մի ակնթարթ միայն ցուցադրեց կարմիր, սև պուտերով մեջքը և էլի մտավ քարերի ետև: Տղան կարծում էր, թե նա վտառի առաջնորդն է և ուրեմն հիմա, ուր որ է, պիտի հայտնվեն նաև մնացածները, բայց քիչ անց գլխի ընկավ, որ ընդհակառակը, վտառի ամենավերջին ձկանն է տեսել, իսկ մնացածները, ով գիտե, գուցե անցել են այն պահին, երբ ինքն ուզում էր ոտքը հասցնել ծիածաններին:

— Ես տեսա,— հայտնեց նա պապին, որն արդեն ոտքերը դուրս էր հանել ջրից, դեմ էր արել արևին ու հաճույքից կկոցած աչքերով հանձնվում էր նիրհին, թեև մեծ էր ցանկությունը՝ նկատել դեպի ցուրտ ակունքը ձգվող կարմրախայտերի չուն:

— Ասա՛, եթե տեսար,— խնդրեց պապը,— ինչպիսի՞ն էր նա, ո՞ր կողմն էր լողում, և առհասարակ ինչո՞ւ ենք լռում: Չեն խոսում շատ իմացողները: Իսկ ի՞նչ գիտենք մենք: Համարյա ոչինչ:

Տղան վաղուց էր ուզում խոսել: Ուզում էր հարցնել, պապն էլ տեսնո՞ւմ է ծիածաններ և չի՞ ցանկանում, արդյոք, իր նման, փորձել դրանց ջերմությունը: Եվ պիտի հարցներ՝ ինչի՞ց է, որ թե՛ աստղերը, թե՛ ծիածանը մնալով իրենց տեղերում՝ կարող են դառնալ աննկատ:

— Ես առավոտյան ծնվեցի,— չգիտես բանաստեղծության տո՞ղ հիշեց պապը, թե՞ ինքը հորինեց,— իսկ հիմա ծեր եմ...

— Նա մեծ չէր՝ մի թիզ էր,— սկսեց տղան:

— Եթե իմ թիզով չափենք, խոշոր ձուկ է եղել,— պապը օդում լայն բաց արեց ափը, ցույց տալով բթամատից ճկույթ փռվածքը:

Տղան շփոթվեց, խճճվեց: Նայեց ջրերին, հայացքով փորձեց չափել գետի այն մասը, որտեղ մի ակնթարթ միայն հայտնվեց ու անհետացավ կարմրախայտը:



— Նա մեծ ձուկ չէր,— չկարողանալով հիշել ձկան մեծությունը, ասաց տղան,— որովհետև մեծ ձուկը կետն է, շնաձուկը և այնքան ուրիշ ձկներ, որոնք ո՛նց կտեղավորվեն այս գետակում:

Գետակը ավելի փոքր էր երևում, քան իրականում կար, որովհետև շնչասպառ էր լինում քարերի մեջ: Դա, ավելի ճիշտ, քարերի գետ էր, թեև տղան գիտեր, որ քարերի գետ չի լինում:

— Նրանք ինչո՞ւ պիտի տեղավորվեն այս գետակում,— զարմացավ պապը:

— Ես էլ դա եմ ասում, պա՛պ, որ չեն կարող տեղավորվել:

— Իսկ ես դա չեմ ասում,— համառեց պապը:— Ես ասում եմ, որ նրանք չեն կարող տեղավորվել, որովհետև ինչո՞ւ պիտի տեղավորվեն:

Տղան խռովեց, իրար սեղմեց պռոշները և հասկացավ, որ պապից չէ, բառերից է խռովել:

Իհարկե, կետը, շնաձուկը և բոլոր խոշոր ձկները չեն ապրի այս գետակում, նրանք ծովային, օվկիանոսային ձկներ են: Իհարկե, նա տեսել էր, գիտեր կարմրախայտի երկարությունը և էլի շատ բաներ գիտեր, բայց արի տես, որ գիտենալը շատ քիչ է: Հարկավոր է նաև պատմել կարողանալ: Իսկ պատմելու համար բառեր են պետք, ճիշտ բառեր:

— Նա փոքր ձուկ էր,— նորից սկսեց տղան և իսկույն էլ լռեց, որովհետև դեմ առավ իր իսկ հարցին. ինչո՞ւ է փոքր, եթե գետակում ավելի մեծ ձկներ չեն ապրում: Գուցե նա գետակի հենց ամենամե՞ծ ձուկն է, որ կա:

— Նա մեծ ձուկ էր,— շտապեց ճշտել տղան ու լացը եկավ: Պապից ծածուկ նա սրբեց աչքերը, թավալգլոր հեռացավ ափից, խրվեց փարթամ կանաչների մեջ: Արցունքները շարունակում էին հոսել և տղան չգիտեր, թե ինչպես դադարեցնի լացը:

«Մեծ, փոքր, մեծ, փոքր,— շրթները ծռմռելով՝ կրկնում է նա մտքում,— մեծը փոքր է, փոքրը՝ մեծ... Քո թիզը... Իմ թիզը...»

Նա գիտեր, թե ինչի վրա է զայրացել: Նրան այնպես էր թվում, թե մարդիկ դիտմամբ են հնարել «մեծ» և «փոքր» բառերը, որ շփոթեցնեն իրեն: Եվ, հավանաբար, հնարողներն իրենք էլ են շփոթվում, որովհետև ո՞վ կարող է համոզված ասել, թե որն է «մեծ» և որը՝ «փոքր»: Չէ՞ որ յուրաքանչյուր «փոքրը» մեծ է շատ ու շատ փոքրերից: Նշանակում է յուրաքանչյուր բան այս աշխարհում միաժամանակ և՛ փոքր է, և՛ մեծ: Ուրեմն կարիք կա՞ր հնարել այդ բառերը:

— Ես առավոտյան ծնվեցի,— կրկնեց պապը,— իսկ հիմա ծեր եմ...

«Թիթեռն է առավոտյան ծնվում,— վրեժ լուծելու նման մտածեց թոռը,— իսկ երեկոյան արդեն ծեր է: Դու թիթեռ ես, մեծ թիթեռ...»

Նա հրճվեց իր համեմատության վրա, բայց և զգաց, որ վիրավորական ոչինչ չի մտածել պապի մասին: Կարող էր, չէ՞, պապը ծնված լինել թիթեռ: Ինքն էլ: Եվ կամ ծաղիկ և կամ ծառ: Եվ կամ ձուկ: Նա ծաղկապսակների վրայից քշեց սև բզեզներին, հոտոտեց կապույտ, դեղին, սպիտակ ծաղիկների մեղրահոտը, հետո դաղնությունը մոռացած, հորթուկի նման տըրտինգ տվեց մարգագետնում, երևակայելով, թե ոտքերը չեն դիպչում գետնին, թեթևակի քսվում են միայն բարձրահասակ խոտերին, որովհետև ինքը ծաղիկներ հոտոտելու համար ցածրից է թռչում: Եթե ցանկանա, կթափահարի թևերը, վեր կբարձրանա, ինչպես թիթեռներն են վեր ելնում, երբ խոտնում են անսկսկալ քամուց: Եթե ցանկանա, այնքան կբարձրանա, որտեղից արդեն չեն երևա խոտերի, ծառերի, ծաղիկների մեծությունները ու փոքրությունները: Չեն լինի մեծ ու փոքր: Այդ չափերը կլուծվեն, կկորչեն գույների մեջ: Ի՞նչ է դուրս գալիս. աստղերի նման, ծիածանների նման էլի իրենց տեղերում կմնան մեծ ու փոքր չափսերը, բայց չե՞ն երևա: Ի՞նչ է դուրս գալիս. ուրեմն և՛ կան, և՛ չկա՞ն մեծ ու փոքր, աստղ ու ծիածան, և՛ ծառ, և՛ խոտ, և՛ ձուկ, և՛ ծաղիկ: Ի՞նչ է դուրս գալիս... Այս ամենը ո՞նց ասի պապին:

Նա հևալով ու հայտնությունից հուզված, եկավ, փռվեց պապի կողքին, սպասեց մի փոքր, մինչև շունչը տեղը գա, հետո երբ ուզում էր խոսել, նկատեց, որ պապը քնել է:

— Մի՛ քնի, պա՛պ,— տղան բոթեց ծերունու կողը,— մի՛ քնի...

— Քնած չեմ,— քնի մեջ ասաց պապը,— ես սպասում եմ:

— Վտառն արդեն անցել է,— ասաց տղան,— վերջին կարմրախայտն էլ անցավ:

— Ուրիշ վտառ կլողա...— պապը չէր փորձում վանել քունը: Նա ապրել էր այնքան, որ նույն հանգըստությամբ կհանձնվեր և մահին:

— Օրը երկար է,— արդեն երանելի թեթևության միջից խոսեց պապը,— երկար է...

— Քնո՞ւմ ես, պա՛պ,— բողոքեց թոռը,— իսկ ես ուզում էի պատմել վերջին կարմրախայտի մասին...

Նա վեր նայեց և տեսավ աստղերը, նա ոտքի ելավ, մտավ գետը ու գայթելով, բայց չկորցնելով հավասարակշռությունը՝ բարձրացավ կրիայի մեջքին, մտավ ծիածանների մեջ, ոտնամատերով զգաց նրանց տաք խուտուտը:

Հետո կամացուկ, քթի տակ, բայց քնած պապի համար ասաց.

— Նա սիրուն ձուկ էր, պա՛պ:

Եվ ուրիշ ոչինչ:







# ՄԵՆՔ ՄԱՆՈՒԿ ՉԵՆՔ ԱՅԼԵՎՍ

ԳԵՎՈՐԳ ԽԱՉԱՏՈՒՐ

Հիմա տարիք ունենք,
Հաղթանակի տարիք,
Մինչդեռ երեկ, երեկ երեկոյան,
Մենք դեռ մանուկ էինք:
Ու մենք ամբողջ օրը խաղում էինք անհոգ,
Լցնելով մեր շուրջը
Քրքիջներով մեր տաք:
Բայց թե երեկ, երեկ երեկոյան,
Երբ դեռ մանուկ էինք,
Մեր մայրերը խստիվ մեզ նախատինք տվին,
Որ էլ մանուկ չենք մենք,





Որ մեզնից էլ փոքրիկ հերոսներ են եղել,
Որոնք կրակների միջով սարսափահար
Ներխուժել են թիկունքը թշնամու
Ու հրդեհել նրանց
Զինանոցները հսկա:
Եվ հենց այդ երեկո,
Մենք քնելուց առաջ զգաստացանք այնքան,
Որ նուրբ դեմքերը մեր մռայլվեցին մեկից
Ու կոպտացան...
Իսկ երբ առավոտյան, արթնանալով քնից,
Մենք ցանկացանք հագնել
Հագուստները մեր հին,
Տեսանք զարմանալի փոքրացել են նրանք...

# ԴԵՂՁԻ ԿՈՐԻԶՆԵՐԸ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Հղկված, երկու կողմից ծակ դեղձի կորիզները տղաների մոտ վերջերս էին տարածվել: Դրանցից յուրաքանչյուրը պատրաստելու համար ժամանակ և համբերություն էր պետք: Դավիթը պատրաստում էր ամենալավ դեղձի կորիզները:

— Դավի՛թ,— ասաց Արմանը,— հապա ցո՛ւյց տուր քո դեղձի կորիզները:

Դավիթը բացեց պայուսակը, ձեռքը խրեց մինչև խորքը և դուրս հանեց ափի մեջ ողորկ, փայլուն կորիզները:

— Հատին ի՞նչ տամ,— ասաց Արմանը:

— Հատի՞ն: Չեմ ծախում,— ասաց Դավիթը:

— Հատին տասը կոպեկ տալիս եմ,— ասաց Արմանը,— վատ գին չէ, ավելի լավերը տալիս են յոթ կոպեկով: Այդպես չէ՞, Սե՛թ,— նա ձայն տվեց Սեթին:

— Այդպես է,— հաստատեց Սեթը:

— Ես չեմ վաճառում,— ասաց Դավիթը:

— Տե՛ս,— ասաց Արմանը,— հատին տասնհինգ կոպեկ տալիս եմ: Սա վերջին գինն է:

— Քեզ հարկավո՞ր են,— հարցրեց Դավիթը:

— Եթե ուզում եմ գնել, նշանակում է հարկավոր են:

Դավիթը կորիզները լցրեց նրա ափի մեջ:

— Վերցրո՛ւ:

Արմանը հաշվեց կորիզները, տեղավորեց գրպանում, մյուս գրպանից հանեց ռուբլիանոցը:

— Մնացածը վաղը կտամ: Հավատո՞ւմ ես:

— Պետք չէ,— ասաց Դավիթը:

— Դու ինձ հավատո՞ւմ ես,— հարցրեց Արմանը:

— Հավատում եմ,— ասաց Դավիթը,— պետք չէ:

— Վերցրո՛ւ,— ասաց Արմանը:— Ես քեզ երբեք չեմ խաբել:

Արմանը ափի մեջ տրորում էր դեղձի ողորկ, փայլեցրած կորիզները:



— Տես, ի՛նչ ապրանք է,— ասում էր Արմանը,— հատը քսան կոպեկով կծախեմ:

— Հիանալի կորիզներ են,— ասաց Սեթը:

— Հիմար մարդիկ գոյություն ունեն, որպեսզի խելոքները օգտըվեն,— ասաց Արմանը:

— Ի՞նչ կորիզներ են, ցույց կտա՞ք,— ասաց Ասուրը:

Ասուրը դասարանում ամենաթույլն է, վտիտ, ճերմակամաշկ, կապույտ, խոշոր աչքերով և հարթ, ոսկեգույն մազերով: Միակը, որ դասարանում հագնում է կարճ շալվար և հասարակ սանդալներ:

— Սրանք հատուկ կորիզներ են,— ասաց Արմանը,— ամբողջ դպրոցում չես ճարի: Էժան կըտամ, ուզո՞ւմ ես:

Ասուրը նուրբ, կարծես թափանցիկ մատներով վերցրեց մի կորիզ, մոտեցրեց աչքերին, նայեց և ապա ետ դրեց Արմանի ափի մեջ:

— Քսան կոպեկ: Հապա, մըտածի՛ր, Սե՛թ,— ասաց Արմանը,— ի՞նչ են տալիս քսան կոպեկի: Տասը հատ այսպիսի կորիզով հիանալի հուլունքաշար կստացվի:

Ասուրը հայացքը կորիզներից չէր կտրում, դրանք զարմանալի գեղեցիկ ծալքերով և հիանալի հղկված կորիզներ էին, բոլորն էլ միաչափ, կարծես ընտրովի:

— Ամբողջ դպրոցում չես ճարի,— ասաց Արմանը,— ես այդ դմբո Դավթին թլսորեցի ու վերցրի:

— Արմա՛ն,— ասաց Սեթը,— դու Դավիթի հետ անազնիվ ես վարվում:

— Նա իմ ընկերն է,— ասաց Արմանը,— և ես ինչպես կուզեմ կվարվեմ:

— Դու նրա միամտությունը ծաղրում ես,— ասաց Սեթը:

— Դու ուրիշի գործերի մեջ ես խառնվում,— ասաց Արմանը:— Կգնե՞ս,— ասաց նա, Ասուրին մի կողմ տանելով:— Հասկանո՞ւմ ես, ես այդ դմբո Դավթից եմ վերցրել այս կորիզները: Սեթը նախանձում է: Իհա՛րկե, ախր լավ կորիզներ են: Կգնե՞ս, Ասո՛ւր,— ասաց Արմանը:— Այդ Սեթը իմ դուրը չի գալիս,— ասաց նա,— ուրիշի գործերի մեջ է խառնվում:

— Լսի՛ր,— ձայն տվեց նա Ասուրի ետևից,— լսի՛ր, Ասո՛ւր: Ահա՛ թե ինչ: Ես քեզ կտամ երկու կորիզ: Ի՛նչ կորիզներ են: Ամբողջ դպրոցում չես ճարի: Իսկ փող հարկավոր չէ: Միայն թե՝ ինչ որ ասեմ Դավթին, դու կհաստատես, լսո՞ւմ ես:

— Լսում եմ,— ասաց Ասուրը:

Ասուրը նայում էր ափի մեջ լցված կորիզներին: Ասուրը առաջին անգամ էր տեսնում այդպիսի գեղեցիկ ծալքավոր և լավ հղկված կորիզներ:

— Քեզ եմ տալիս, հենց այնպես, մենք ընկերներ ենք, ճի՞շտ է:

— Ճիշտ է,— համաձայնեց Ասուրը:

Երբեք չի պատահում, որ այդ տղան հակառակը պնդի, նա ամեն ինչի մի տեսակ մեղմորեն համաձայնում է, և թվում է, թե նրան չի կարելի զայրացնել, չի կարելի ստիպել, որ նա առարկի:

— Դավի՛թ, եթե ես որևէ մեկի դնչին հասցնեմ, ինձ կպաշտպանե՞ս,— հարցրեց Արմանը:

— Իսկ ինչո՞ւ պիտի հասցընես,— հարցրեց Դավիթը:

— Դու ուժեղ ես, Դավի՛թ,— ասաց Արմանը,— և ինձ պիտի պաշտպանես: Մենք բարեկամներ ենք:

— Դա ուրիշ հարց է,— ասաց Դավիթը:

Արմանը նիհար է, նեղ ուսերով, փոքր գլխով, սև, խոշոր աչքերով և երկար թարթիչներով: Հեռվից Արմանը բարձրահասակ է թվում, մոտենում ես տեսնում, որ այնքան էլ բարձրահասակ չէ:

Երեկոյան տաք էր, և փողոցում մնալը հաճելի էր: Երեքով



անցան քաղաքային զբոսայգու մոտով: Այստեղ կանգնեցին, և Արմանը ասաց.

— Դավի՛թ, եթե ես քո ուժն ունենայի, այդ Սեթի դնչին կըհասցնեի:

— Ինչո՞ւ,— հարցրեց Դավիթը:

— Երեկ նա քո մասին ավելորդ խոսում էր: Այդպես չէ՞, Ասո՛ւր:

— Ի՞նչ էր խոսում,— հարցրեց Դավիթը:

Արմանը ձեռքերը խրել էր նեղ «ջինսի» գրպանները: Դավիթը կանգնած էր նրա ետևում՝ բարձրահասակ, լայնաթիկունք, բռունցքները «ջինսի» նեղ գըրպանները խրած: Փողոցներում լույսերը վառվեցին, և Դավիթի վանդակավոր վերնաշապիկը լուսավորվեց. նրա լայն ճակատով խոշոր դեմքը մնում էր մութի մեջ:

— Ասո՛ւր, պատմի՛ր, թե քեզ ինչ է ասել Սեթը: Նա քեզ ասել է. «Դավի՛թ, թանձրամիտ խաբեբա ես»: Այդպե՞ս է, Ասո՛ւր:

Ասուրը կանգնած էր նրանց առջև և ոչ մի շարժում չէր կարող անել: Նեղ մարմնով, միջահասակ Արմանը հանգիստ կանգնած, աչքերը անտարբերությամբ հառել էր վեր. կարծես ծառի մութ սաղարթների մեջ ճնճղուկներ էր հաշվում:

— Ասո՛ւր, ես քեզ հարցնում եմ,— կարծես արդեն ծուլանալով ասաց Արմանը,— Սեթը ի՞նչ ասաց:



Նրա ետևում Դավիթը անտարբերությամբ նայում էր ուրիշ կողմ, այս ամենը կարծես նրան չէր վերաբերվում: Երեկ Արմանը հագել էր նոր սվիտեր, կիպ, բարձր օձիքով, նա երեկ հատկապես երեք անգամ անցավ Աբովյանով, իր ետևից տղաներին քարշ տալով: Ասուրը գիտե, երբ Դավիթը կանգնած է այդ տղայի ետևում, նա կարող է առանց դեմքի արտահայտությունը փոխելու, անսպասելի հարվածել՝ չվախենալով պատասխան հարված ստանալուց:

— Սեթն ասաց, որ դու խաբում ես Դավթին, որ դու նրան ամեն տեղ անվանում ես «դմբո», և որ դա ազնիվ չէ,— ասաց Ասուրը:

Արմանը թեթևակի ետ նայեց: Դավիթը շփոթված նայում էր մի կողմ:

— Նա սուտ է խոսում: Դու ինձ այդպես չասացիր,— ասաց Արմանը:

— Դու ինձ տվեցիր ահա այս դեղձի կորիզները և պատվիրեցիր ստել, ճի՞շտ է,— ասաց Ասուրը:

— Գնանք,— ասաց Դավիթը:

Նրանք երկուսով անցան մայթով, խանութների լուսավորված ցուցափեղկերի մոտով, և այժմ Ասուրը լավ տեսնում էր Դավթի դեմքը. նա ձեռքերը չէր հանում «ջինսի» գրպաններից, նրա լայն ուսերը մի տեսակ կքված էին առաջ, գլուխը վար էր հակված, և Ասուրին նա թվում էր բոլորովին իր հասակի: Եվ նա ասաց.

— Ես չէի թողնի, որ նա քեզ հարվածեր:

— Ես կարծում էի, թե դու նրան կպաշտպանես,— ասաց Ասուրը:

Նրանք անցան լուսավորված փողոցով, լուսավորված լայն ցուցափեղկերի առջևով: Դավիթը չէր նայում նրա դեմքին, Դավիթը, ինչպես միշտ, ցրված հայացքով էր: Բայց Ասուրը զգում էր. խոշոր գլխով, լայն ճակատով, խոշորամարմին այդ տղան հիմա լարված մտածում էր:

— Դու լավ տղա ես,— ասաց Դավիթը:— Վաղը ես քեզ իսկական հղկված դեղձի կորիզներ կտամ, ավելի լավերը: Իսկ հիմա ուշ է, հարկավոր է տուն գնալ:



## ՉԵՍ ԹԱՔՑՆԻ...

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Ծառը հողում է
Թաքցնում արմատը,
Նուռը կեղևում՝
Իր նռնահատը:

Ձուկը ջրում է
Միշտ էլ թաքնվում,
Կանաչ վարունգը՝
Կանաչ մարգերում:

Անտես աշխարհ կա
Ծովում անհատակ,
Թաքնվում է անգամ
Արևն ամպի տակ:

Ինչե՜ր չի թաքցնում
Եվ մաքուր ձյունը...
Չես ծածկի միայն
Տգիտությունը:

Նկ. ՋԱՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ





# ՎԵՐՋԻՆ Գ

ՎԻԿՏՈՐ ԲԱԼԱՅԱՆ



իշեր էր, ուշ գիշեր: Երկնքում ցոլացող աստղերը երբեմն-երբեմն անհետանում էին Գագիկի հայացքից: Աղվամազը դեմքին, փոքրիկ, դուրս պրրծած աչքերով Գագիկը ծառի տակ պառկած՝ մտովի շրջագծում էր երկնքի մի մասն ու սկսում հաշվել աստղերը՝ մեկ, երկու, երեք, չորս... Շփոթվում էր, կորցնում հաշիվը, նորից սկսում ու նորից շփոթում:

Ուղիղ չորս տարի առաջ Գագիկն այսպես հաշվում էր րոպեները, ժամերը, ամիսները: Ժամանակն ասես կանգ էր առել, չէր շարժվում: Դե, որքա՞ն պիտի հաշվեր, որպեսզի լրանար յոթ տարին... Երբեմն հուսահատությունից փռվում էր գետնին, ինչպես գերանդու հարվածից ընկած հասկը, և սկսում հեկեկալ:

Այն ժամանակ այս ծառը չկար, միայն չորացած խոտեր էին, որոնց վրա ասես գյուղի ջրաղացպանը թափ էր տվել իր շորերը:

Նա մտքով սլացավ իրենց գյուղը. ահա փոքրիկ առուն, նրա վրա կռացած մեծ ուռենին: Լողալով, տղաները մոտենում էին ծառին ու կախվում ջրի մեջ կռացած նրա ճյուղերից... Ահա և մայրը՝ մի ձեռքով Գայանեին է օրորում, մյուսով՝ օջախին փայտ ավելացնում: Հայրը թիմարում է կովին, մաքրում տակը, հետո մի կողմ է գցում բահն ու, կոշտացած ձեռքերը մեկնած, մոտենում իրեն: Չէ՛, գրկելու համար չի գալիս: Նա ցույց է տալիս ձեռքերն ու ասում. «Տարիներ շարունակ այս ձեռքերով աշխատել եմ, քրտինք թափել, քեզ նմանին մեծացրել... կյանքում այս ձեռքերը ոչ մի կեղտոտ գործ չեն արել, իսկ դու...»

Գագիկը գլուխն ամուր հպում է գետնին, կարծես ուզում է պատռել ու մտնել մեջը:

Չորս տարի առաջ էր... Գագիկը բոլորից շուտ էր գնացել լողանալու: Ոչ ոք չկար գետափին: Շրջապատում միայն լսվում էր ծղրիդի երգն ու ջրի վրա կախված ուռենու ճյուղերի ծանոթ շրշյունը: Գագիկը սովորականի նման լողացավ, պառկեց տաք ավազի վրա ու սպասեց ընկերներին: Հաճելի էր ջերմ արևը, և

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

## ՁՄԵՌԱՅԻՆ ԵՐԳԵՐ

Հին օրերի ձյունը
Մի քիչ տաք էր կարծես,
Եվ ավելի՜ ճերմակ,
Եվ ավելի՜ ճերմակ,
Նա իջնում էր հանկարծ,
Ծածկում տուն ու պարտեզ,
Ծածկում խոտի դեզեր,
Ճանապարհներ ու բակ:

Մենք դուրս էինք թռչում,
Վազում ուրախ
Եվ փափուկ ձյան վրա
Ձնագնդի խաղում,
Իսկ երբ մրսում էինք,
Վազում տունը մոտիկ
Ու թաց ոտքերը մեր
Թոնիրի մեջ կախում:

Չեմ էլ հիշում նույնիսկ,
Մենք ունեի՞նք ձեզ պես
Ոտնամաններ սիրուն,
Ոտնամաններ հարմար,—
Հին օրերի ձյունը
Մի քիչ տաք էր կարծես,
Եվ ավելի՜ ճերմակ,
Եվ ավելի՜ ճերմակ:

* * *

Գյուղի ծայրին է տունը ձեր,
Կտուրին կա մի դեզ,
Ձեր տան ճամփեն չեմ մոռացել,
Ես միշտ հիշում եմ քեզ:

Ձյուն է գալիս ձմռան կեսին,
Իջնում տաք ու մաքուր,
Իջնում դեզին, ձեր պարտեզին
Ու ամեն ինչ ծածկում:

Որքան անմեղ ուրախություն՝
Այս առաջին ձյան տակ,



Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

Նա կամաց-կամաց փակեց աչքերը: Քիչ անց, նրա ականջին հասավ մի ծանոթ ձայն.

— Է՜յ, Նազա՛ր, վե՜ր կաց...

Սարուխանն էր ու մի անծանոթ տղա: Սրա շալվարն այնքան նեղ էր, որ եթե «Քոթուկ» Շավոն հագներ, փողքերը մեջտեղից ճոթ կլինեին: Իսկ վերնաշապիկն ասես աշխարհագրական քարտեզից կարված լիներ...

— Էդ կլոունն ո՞վ է,— հորանջելով հարցրեց Գագիկը:

Անծանոթ տղան հարձակվեց Գագիկի վրա, բայց ետ շպրտվեց՝ հանդիպելով Գագիկի ամուր բռունցքներին:

— Դե լա՜վ, Գագի՛կ ջան, ժորժը լավ տղա է,— միջամտեց Սարուխանը,— քաղաքից է եկել և մեր տանն էլ հանգստանում է...

Այդպես մի քանի օր նրանք հանդիպում էին գետափին, զրուցում, լողանում, միասին տուն գնում: Հետզհետե Գագիկն ու ժորժը մտերմացան:

Հաճախ ժորժենց մոտ քաղաքից հյուրեր էին գալիս: Մեծ տղաներ էին, բայց ժորժի հետ խոսում էին, ինչպես իրենց հավասարի հետ: Ամեն անգամ նրանք գնում էին գյուղից դուրս, անտառի մոտ թեժ կրակ վառում ու խորոված անում: ժորժն էլ նրանց հետ օղի էր խմում:

— Խմի՛ր, Գագի՛կ ջան, խմի՛ր, որ իսկական տղամարդ դառնաս,— ասում էր ժորժը:

— Չէ՛, չեմ ուզում:

Բայց մի անգամ Գագիկին շատ ստիպեցին, խմեց, հազաց... Հետո խմեց երկրորդ բաժակը, ու գլուխն այնպես սկսեց պտտվել, որ կարծես ջրաղացքարի վրա նստած լիներ:

Անցան օրեր: Մի անգամ ժորժը Գագիկի ականջին փսփսաց.

— Այս գիշեր պատրա՛ստ եղիր, կսուլեմ, դուրս կգաս:



— Ախր, հայրս չի թողնի:

— Գաղտնի դուրս կըգաս... Ոչ ոք չպիտի իմանա...

Գիշերվա կեսին, լսելով ժորժի սուլոցը, Գագիկը վերցրեց շորերն ու ոտքերի թաթերի վրա կամաց դուրս եկավ տնից: Գյուղի ծայրին նրան սպասում էին մի քանի տղաներ: Նրանց կողքին կանգնած էր մի «Պոբեդա» ավտոմեքենա:

— Նստիր շոֆերի՛ կողքը, Գագի՛կ ջան, նստի՛ր,— նրա գլուխը շոյելով, ասաց Հենդոն:

Ավտոմեքենան սլացավ դեպի շրջկենտրոն, հասան մի մութ փողոց:

— Կանգնիր այստե՛ղ...

Հենդոն, ժորժը և Գագիկը իջան կտորեղենի խանութներից մեկի մոտ: Հենդոն հեշտությամբ հանեց լուսամուտի փոքրիկ ապակին:

— Արի՛, դու փոքր ես, կարող ես այս ծակից ներս մտնել: Մտի՛ր ու կտորեղենը տուր մեզ:

— Ես գողություն չեմ անի,— ասաց Գագիկը:

— Մտի՛ր, Գագի՛կ ջան,— խրախուսեցին մյուսները:

— Չեմ գնա, հայրս որ իմացավ...

— Մտի՛ր...— ատամները կրճտացրեց Հենդոն:— Մտիր, թե չէ հորդ էլ, դասատուներիդ էլ կասենք, թե ոնց էիր մեզ հետ օղի խմում, մեր փողերով կինո գնում...

Որքան լույս ու բանդարտություն
Իջնում է մեղմ ու տաք:

Մենք թավալվում ենք ձյան վրա,
Ամբողջ օրը խաղում,
Քանդակում ենք թիթ ու բերան,
Վազում ու ծիծաղում:

Բարձրանում ենք կտուրը ձեր,
Որ խոտ գցենք հորթին,
Ծնծղուկները խոտերի մեջ
Կուչ են եկել ցրտից:

Խոտը այնպես տա՜ք ու փափուկ,
Բույր է մանուշակի,
Ծնծղուկներն են ոստնում ճապուկ
Քո ձեռքերի տակից:

Ձյուն է մաղվում ձմռան կեսին,
Իջնում տաք ու մաքուր,
Իջնում դեզին, ձեր պարտեզին
Եվ ամեն ինչ ծածկում...

Գագիկին բարձրացրին ու հրեցին ներս:

— Ձեռքդ ինչ ընկնի՝ բե՛ր...

Գողացած հակերը նրանք տարան Սարուխանենց ներքնահարկը: Փորեցին ներքնահարկի հողե հատակը, կտորեղենը մեջը դարսեցին ու նորից հողով ծածկեցին:

Գագիկը տուն հասավ այն ժամանակ, երբ աքաղաղներն սկսեցին կանչել: Նա չկարողացավ քնել...

Անցավ մի շաբաթ... ժորժի ընկերները նորից երևացին ու գիշերով տեղափոխեցին կտորները: Մյուս օրն անտառի փեշին նորից սկսվեց կերուխումը:

— Խմի՛ր... Գագի՛կ ջան, խմի՜ր, որ տղամարդ դառնաս,— ձայն էին տալիս այս ու այն կողմից,— տեսա՞ր, որ ոչ ոք չիմացավ:

Ու խմում էր Գագիկը...

Անցան էլի օրեր, շաբաթներ... և մի գիշեր թանկարժեք զարդերի խանութի մոտ, կարծես գետնի տակից բուսան երեք միլիցիոներ: Հենդոն ու ժորժը ցած գցեցին լինգն ու բարձրացրին ձեռքները:

— Առա՛ջ անցեք,— կարգադրեցին նրանց:



...Դատեցին նրանց, մեծերին դատապարտեցին բանտարկության, իսկ Գագիկին տարան մանկական գաղութ: Անցնում էին օրերը: Մի անգամ նա փորձեց փախչել: Գիշեր էր: Գագիկը գաղտագողի դուրս եկավ սենյակից, ծառերի արանքով քայլեց դեպի պատը, բարձրացավ, բայց նույն րոպեին.

— Իջի՛ր,— լսեց նա ու զգաց, թե ինչպես մեկը ոլորում է իր ականջը:

Գագիկը բարձրացրեց գլուխը: Գաղութի պետն էր: Այդ նույն ժամանակ նրան մոտեցավ պետի տեղակալը՝ Նիհար, բայց ջլուտ, ամուր կազմվածքով երիտասարդ մի սպա: Գագիկն արդեն ճանաչում էր նրան: Քանի՜-քանի անգամ զրուցել էր իր հետ, խորհուրդներ տվել: Այդ ավագ լեյտենանտըն այնքան մտերիմ էր խոսում, կարծես իր հարազատը լիներ: Այս անգամ էլ նա մոտեցավ, հանդիմանական հայացքով նայեց հերթապահին:

— Գագիկը լավ տղա է, ականջը մի՛ քաշիր,— ասաց նա ու դարձավ տղային.— Ո՞ւր էիր ուզում փախչել:— Ու նա դանդաղ քայլեց դեպի գրասենյակ:

Գագիկը լուռ հետևեց նրան: Ավագ լեյտենանտի առանձնասենյակում նստեցին ու երկար զրուցեցին... Իսկ առավոտյան, երբ Գագիկն անցնում էր նոր տնկված ծառերի մոտով, նորից նրան ձայն տվեց գաղութի պետի տեղակալը: Գագիկը մոտեցավ:

— Գագի՛կ, հոգնել եմ, մի եկ օգնի՛ր,— ու նա բահը մեկնեց Գագիկին:

Տղան աչքի տակով նայեց ավագ լեյտենանտին, վերցրեց բահն ու սկսեց փխրեցնել ծառի տակի հողը:

Հետո որոշվեց գաղութում կառուցել լողավազան: Մյուսների հետ Գագիկն էլ մասնակցեց լողավազանի կառուցմանը:

Անցավ երկու տարի: Գագիկը դարձավ գաղութի շնորհալի երեխաներից մեկը: Նրա պատրաստած մոդելներն ու զանազան իրերը գաղութի ցուցահանդեսում արժանացան խրախուսանքի: Աշխատանքի հետ միասին, Գագիկը կանոնավոր հաճախում էր դասերին: Երբ «հինգերով» ավարտեց յոթերորդ դասարանը, վերցրեց գրիչ ու թուղթ և, երկու տարվա ընդմիջումից հետո, առաջին անգամ նամակ գրեց. «Հայրիկ և մայրիկ ջան, փոխադրվել եմ ութերորդ դասարան: Գաղութի պետն ասում է, որ իսկական մարդ եմ դառնում: Դա ինձ երկրորդ անգամ են ասում, բայց ես այս մեկին եմ հավատում...»

...Գագիկը բարձրացրեց գլուխն ու, նորից նայելով աստղալից երկնքին, հաշվեց աստղերը՝ մեկ, երկու, երեք, չորս... Չորս տարի է, ինչ նա մանկական գաղութում է, դեռ երեք տարի էլ կա, որ ազատվի, տուն վերադառնա:

Ինչ-որ մեկը, որ աննկատ մոտեցել էր նրան, կամացուկ ասաց.

— Գագի՛կ:

Տղան բարձրացրեց գլուխը: Ավագ լեյտենանտն էր:

— Ինչո՞ւ հանրակացարան չես գնում, քնելու ժամն է:

Հիմա կգնամ...

— Գնա՛, տղա՛ս, սա քո վերջին գիշերը կլինի գաղութում...

— Ի՞նչ:

— Քո օրինակելի վարքի, աշխատասիրության, ուսման առաջադիմության համար որոշել ենք ժամկետից շուտ ազատել քեզ:

Գագիկի աչքերում ուրախության արցունքներ փայլեցին:



# ԷԴՎԱՐԴ ՄԻՐԶՈՅԱՆ

*Մեզնից յուրաքանչյուրը*
*գալիս է իր մանկությունից...*
*ՍԵՆՏ-ԷԿԶՅՈՒՊԵՐԻ*

Ծնողների միակ որդին էր, բայց երես չէին տալիս: «Ես նրան պահում էի խիստ ռեժիմով,— ասում է մայրը,— և նրա հետ վարվում էի թշնամու խստությամբ, որպեսզի հետո նա բարեկամի բարությամբ վերաբերվի աշխարհին ու ինձ»:

Մայրը՝ Լյուսյա Միրզոյանը ծնվել է Վրաստանում, տոհմիկ մտավորական ընտանիքի դուստրն է, լավ դաստիարակություն ու լավ կրթություն ստացած, արվեստի աշխարհին պատկանող կին, ներքին ու արտաքին ներդաշնակությամբ օժտված:

Հայրը՝ Միքայել Միրզոյանը, հայ ժողովրդական երգի ու երաժշտության անխոնջ մշակներից էր, խմբավար, մանկավարժ, կոմպոզիտոր, գրում էր բացառապես երգեր, ժողովրդական մոտիվներով:

Միրզոյանների տունը քսանական թվականների երևանյան հյուրընկալ ու գրավիչ տներից էր, ուր ասուլիսի էին հավաքվում երաժշտության ու արվեստի մեծերը՝ Ալեքսանդր Սպենդիարյան, Ռոմանոս Մելիքյան, Սպիրիդոն Մելիքյան, Անուշավան Տեր-Ղևոնդյան, Ազատ Մանուկյան (հայ երաժշտության Խնկո-Ապերը, որն իրեն բացառապես նվիրեց մանկական երգին ու երաժշտությանը), խոշոր արվեստաբան Արշակ Ադամյան: Նրանք իրենց նոր գրած ստեղծագործություններն էին կատարում, կարծիքներ փոխանակում... Փոքրիկ Էդիկը շնչում էր երաժշտությամբ հագեցված այդ մթնոլորտը, հափշտակված լսում մեծերին: Բայց ինչքան էլ հափշտակված լիներ մեծերի զրույցով, հենց հասնում էր իր քնելու ժամը, չէր սպասում, որ մայրն հիշեցնի, անաղմուկ քաշվում էր ննջարան:

Ծնողներին չէր զբաղեցնում այն հարցը, թե Էդիկը մեծանա ինչ կդառնա: Նրանց մտահոգությունն էր նրա մեջ արթնացնել, պատվաստել ու զարգացնել բարեկիրթ մարդուն անհրաժեշտ հատկություններ:

Տղայի 7-ը լրացավ և ուղարկեցին դպրոց: Իհարկե, նաև երաժշտություն էր սովորում, դաշնամուր էր նվագում:

Չորրորդ դասարանում էր, որ մի օր տուն եկավ դպրոցից և սովորականի պես բակ չվազեց խաղալու: Ուսուցչուհին մի ցնցող դեպք էր պատմել, պատկերը չէր հեռանում նրա աչքից. Պետրոգրադ... Կիրակի... ցուրտ, սառնամանիք օր, հազարավոր բանվորներ՝ իրենց կանանց, երեխաների հետ, խաչ ու խաչվառներ առած, շարքերով, «Աստված պահի թագավորին» երգը երգելով, շարժվում են դեպի թագավորի ձմեռային պալատը, որ գանգատվեն թագավորին իրենց դաժան գործարանատերերից, պատմեն իրենց թշվառ վիճակի մասին, ասեն, որ, թագավորն ապրած կենա, իրենք աշխատում են առավոտից մինչև երեկո և չնչին գրոշներ են ստանում, կիսամերկ են ու կիսաքաղց, թագավորն ապրած կենա... Ահա այսպես, ժողովուրդը երգելով, աղոթելով, կանանց, երեխաների հետ մոտենում են թագավորի ձմեռային պալատին... Իսկ թագավորը վարագույրի ետևում թաքնված նայում է, սպասում է, մինչև ժողովուրդը գալիս, ծով է կապում պալատի առջև, և թագավորը նշան է անում նախապես պատրաստ կանգնած զորքին, ու զորքը կրակ է բացում անզեն բանվորների, նրանց կանանց ու երեխաների վրա... Հրապարակը ներկվում է արյունով, և պատմության մեջ 1905 թվի հունվարի 9-ի այդ օրը կոչվում է «Արյունոտ կիրակի»:

Էդիկը նստում է դաշնամուրի առջև և աշխատում այս պատկերը վերածել երաժշտական լեզվի: Եվ հաջողվում է: Ցույց է տալիս հորը, հայրը հավանում է: Ռոմանոս Մելիքյանը, երբ հերթական այցելության է գալիս, երգը ցույց են տալիս նաև նրան: Նա նույնպես հավանում է; գովում Էդիկին: Էդիկն ուրա-

խաղում է, հայրն ու մայրն էլ են ուրախանում, Ռոմանոս Մելիքյանի գովասանքը մեծ բան էր: Բայց նրանք դրանից հետո էլ դարձյալ չեն համարում, թե Էդիկի ապագան որոշվեց, թե նա երաժշտությանն է նվիրվելու: Ծնողները չեն հետապնդում, չեն հիշեցնում, չեն ստիպում, որ նա շարունակի երաժշտություն հորինել: Էդիկն առաջվա պես դպրոց է հաճախում, ազատ ժամերին ինքնամոռաց խաղում է ընկերների հետ: Նա անասելի սեր ուներ դեպի շները: Իմանալու համար, թե տվյալ պահին որտեղ է Էդիկը, պետք էր ականջ դնել, պարզելու, թե բակի, հարևան բակերի կամ փողոցի ո՞ր անկյունից է շան կամ շների ուրախ կլանչյուններ գալիս. ուրեմն այնտեղ է Էդիկը՝ կերակրում է նրանց, փաղաքշում, խաղում հետները:

Երեք տարի անց, մի գնցող դեպք մղեց Էդիկին գրելու իր երկրորդ ստեղծագործությունը, որը նա կոչեց «Երգ անխոս»: Այս երգը ցույց չտվին Ռոմանոս Մելիքյանին: Ընտանիքի մտերիմ բարեկամն ու մեծ կոմպոզիտորը մահացել էր: Եվ երգը Էդիկը նվիրել էր նրան:

Այդ տարի՝ 1935-ին, նա գրեց ևս մի երգ, և այդ երեք երգի հիման վրա տասնչորսամյա Էդիկին ընդունեցին կոնսերվատորիայի ստեղծագործական բաժնի նախապատրաստական դասարանը: Այլևս տարակույս չըկար, որ Էդիկի ճանապարհն այդ է:

Բայց հետո պատահեց այն, ինչ ամեն մեկի կյանքում կարող է պատահել:

Մի անգամ անպատրաստ դասի գնալու հետ կապված մի թյուրիմացություն ծագեց Էդիկի և իր դասատուներից մեկի միջև: Էդիկի խոստովանությամբ, այդ թյուրիմացությունը իր իսկ մեղքով գնալով խորացավ, հանեց իրեն հունից, և նա սկսեց դըրսևորել իրեն ո՛չ այնպես, ինչպես պետք էր: Բանն հասավ այնտեղ, որ կոնսերվատորիայում նրա մնալու-չմնալու հարց առաջացավ: Ծնողներն էլ ըսկըսեցին տարակուսել. եթե նրա տվյալները անբավարար են, ի՞նչ իմաստ, որ նա տարիներ կորցնի կոնսերվատորիայում, ավելի լավ չէ՞ բժիշկ դառնա: Սակայն հմուտ մանկավարժ, կոմպոզիտոր Վարդգես Տալյանը (որդին աշուղ Շերամի) կտրուկ միջամտեց, գտավ, որ ճակատագրական սխալ կլինի կոնսերվատորիայի դռները փակել Էդիկի առջև, պետք է ամեն կերպ աշխատել նրա մեջ վերականգնել նախ հավատն իր նկատմամբ: Նա հանձն առավ պարապել Էդիկի հետ: Ապացուցելու համար, որ նա կարող է պահանջվածից ավելին անել, հանձնարարեց գրել սոնատ՝ երաժըշտական մեծ ու բարդ կտավ, որ չի պահանջվում այդ կուրսի ուսանողից: Էդիկն ինքն էլ զարմացավ. ծիծաղո՞ւմ է նա իր վրա: Բայց Տալյանը պնդեց, տըրամադրեց, և Էդիկը հաջողությամբ հաղթահարեց ուժերից վեր թվացող առաջադրանքը:

Կարճ ժամանակից հետո Էդվարդ Միրզոյանի անունը սկսեց հնչել կոնսերվատորիայի ամենաաչքի ընկնող երիտասարդ ստեղծագործողների՝ Առնո Բաբաջանյանի, Ալեքսանդր Հարությունյանի, Ղազարոս Սարյանի անունների կողքին: Դեռևս ուսանող՝ 1940 թվին լավագույն երգի մրցանակաբաշխությունում մրցանակ ստացավ նրա «Փառք Կարմիր բանակին» երգը: 1941 թվին ավարտեց Երևվանի կոնսերվատորիան, իբրև դիպլոմային աշխատանք ներկայացնելով «Լոռեցի Սաքոն» սիմֆոնիկ պոեմը, որն առաջին անգամ կատարեց Հայաստանի ֆիլհարմոնիայի սիմֆոնիկ նվագախումբը, դիրիժոր Կ. Ս. Սարաջևի ղեկավարությամբ:



Էդ. Միրզոյանը Կ. Սա

Ի դեպ՝ Սարաջևի մասին, որը նույնպես խոշոր դեր կատարեց Էդվարդ Միրզոյանի իբրև ստեղծագործող ձևավորվելու գործում: Բայց ոչ միայն Էդվարդ Միրզոյանի: Մեծ երախտագիտությամբ են հիշում նրան Երևանի կոնսերվատորիայի բոլոր այն սաները, որոնք այսօր հայ երաժշտության փայլուն համաստեղությունն են կազմում և դուրս են բերել մեր արդի երաժըշտությունը ոչ միայն միութենական ասպարեզ, այլև նրա սահմաններից դուրս:

Կոստանդին Սողոմոնի Սարաջևը ծնվել է Կովկասի Դերբենդ քաղաքում: Հայրը ճանաչված բժիշկ էր: Մայրը մեծ սեր ուներ դեպի երաժշտությունը, որդին դաշնամուրի առաջին դասերը մորից է ստանում, ապա ընդունվում և ավարտում է Մոսկվայի կոնսերվատորիայի ջութակի բաժինը, այնուհետև մեկնում է Գերմանիա և աշխարհահռչակ դիրիժոր Արթուր Նիկիշի մոտ, որն համարվում էր հանճարեղ դիրիժոր, մի բա-



...աջևի հետ, 1942 թ.:

նի տարի ուսանելուց հետո, վերադառնում է ու նվիրվում դիրիժորական արվեստին: Մոսկվայի կոնսերվատորիայի դիրեկտորի հրավերով Սարաջևը այդտեղ բացում է դիրիժորական բաժին և ղեկավարում այն: Իրենց հիշողություններում մեծ հիացմունքով ու մեծ երախտագիտությամբ են հիշում Սարաջևի անունը դիրիժորների սովետական այդ առաջին շրջանավարտները, հպարտությամբ նշելով, որ այդ առաջին շրջանավարտներն են: Մոսկվայի կոնսերվատորիայի բազմամյա պրոֆեսոր Սարաջևը, որ բացառիկ գիտելիքների, բացառիկ տաղանդի, կազմակերպչական բացառիկ ընդունակությունների տեր արվեստագետ էր, 1935 թվին հրավիրվում է Հայաստան, նշանակվում Երևանի կոնսերվատորիայի դիրեկտոր, միաժամանակ ղեկավարում ֆիլհարմոնիայի նվագախումբը, իր տաղանդը, իր հոգեկան ու մտավոր ողջ կարողությունը ի սպաս դնելով մայր Հայաստանի երաժշտական մշակույթի զարգացմանը: Նրա տեսքը միայն ակնածանք ու երկյուղածություն էր ներշնչում, ուղղամիտ էր, ուղղախոս, և սրամիտ, աներևակայելի սրամիտ... Միջահասակ, շարժուն, շքեղ բեղ ու մորուքն արդեն ճերմակած, կարող էր մեկ էլ թույլ տալ իրեն տղայական չարաճճիություններ: Պատմում են, որ Մոսկվայում, կոնսերվատորիայի պրոֆեսոր և դիրիժոր Սարաջևը մի անգամ փորձի ընդմիջման ժամանակ, բեմի առջևով անցնելիս, զարմացած կանգ է առնում, տեսնելով վարագույրի տակից դուրս ելած մերկ ոտքերի մի շարք. իմանում է, որ մրցություն է հայտարարված պարզելու, թե արտիստուհիներից ում ոտքերն են ավելի գեղեցիկ: Սարաջևը առանց ժամանակ կորցնելու, անցնում է վարագույրի ետևը, ոտքը մերկացնում և ցուցադրում մյուսների կողքին, և, ասում են, մրցանակը ստանում է Սարաջևը:

Ահա այս, մի կողմից պատկառազդու, մյուս կողմից չարաճճի ծերուկը դարձավ Սովետական Հայաստանի երաժշտական աշխարհի ոգին, և ընդունված է ասել, որ Երևանի կոնսերվատորիան կոնսերվատորիա դարձրեց Սարաջևը: Նրա արմատավորած ավանդույթներն են, որ այսօր անհրաժեշտ բարձրության վրա են պահում մեր կոնսերվատորիան, յուրաքանչյուր տարի նոր անուններով համալրելով սովետահայ երաժըշտության փայլուն համաստեղությունը:

Որքան էլ տարօրինակ թվա, Սարաջևը, կարծես, հումորի ըզգացում նույնպես պատվաստեց իր սաների մեջ, որով այնքան փայլուն են նրանք և նրանցից մանավանդ՝ Էդվարդ Միրզոյանը: Դրանում համոզվելու համար բավական է գեթ մեկ անգամ լսել նրան:

Կոնսերվատորիան հազիվ ավարտած, վրա հասավ Հայրենական մեծ պատերազմը: Էդվարդ Միրզոյանը մեկնեց բանակ: Բայց չդադարեց ստեղծագործել: Գրեց մի շարք մասսայական երգեր, որոնցից «Հայրենիքը կանչում է» երգը պատերազմի տարիներին ռադիոյով հնչում էր իբրև հայրենասիրական հիմն: Երաժշտական այլ ստեղծագործություններից զատ, 1944 թ. նա գրեց «Հայրենական պատերազմի հերոսներին» սիմֆոնիկ պոեմը, որը կատարվեց Թբիլիսիում՝ Անդրկովկասյան հանրապետությունների տասնօրյակին, մեծ հաջողություն գտնելով:

Պատերազմից հետո նա գործուղվեց Մոսկվա կատարելագործվելու, ուսանեց Միության խոշոր երաժիշտներ Լիտինսկու, Ցուկերմանի և Պեյկոյի մոտ: Այնտեղ նա գրեց իր «Պարային սյուիտը», «Լարային կվարտետը», ապա «Ուվերտյուրա սիմֆոնիկ նվագախմբի համար», և «Հայաստան» կանտատան, որոնցով երաժշտագետների վկայությամբ, մեկեն դրսևորեց իրեն իբրև ինքնատիպ ու համարձակ արվեստագետ: Քսաներեքամյա Միրզոյանի «Կվարտետը» Սարաջևը համարեց «փայլուն նըմուշ անսամբլային երաժշտության, արժեքավոր ավանդ հայկական երաժշտական արվեստի մեջ»: Այդ ստեղծագործությունը հնչեց ոչ միայն մեր Միության, այլև նրա սահմաններից դուրս՝ Ռումինիայում, Հունգարիայում, Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունում, Նորվեգիայում, Ճապոնիայում: Լայպցիգի կոնսերվատորիայի պրոֆեսոր Ծյունցենը գրեց. «Նրա երաժշտությունը թարմ է, ինքնատիպ, աչքի է ընկնում հուզական մեծ լարվածությամբ, գըրված է պրոֆեսիոնալ բարձր մակարդակով»: Նա Միրզոյանին կոչեց խաչատրյանական դպրոցի ցայտուն ներկայացուցիչը: Գերմանական Դեմոկրատական

Հանրապետությունում Միրզոյանի կվարտետը ձայնագրեց գերմանական ռադիոն: Իսկ Պրագայի երաժշտական արվեստի ակադեմիայի պրոֆեսոր Էմիլ Գրոբինը Միրզոյանի այդ ստեղծագործությունը համարեց «շատ հետաքրքիր նորարարական ըստեղծագործություն»: Շատ մեծ հաջողություն ունեցավ այդ նույն ստեղծագործությունը Ամերիկայի Միացյալ Նահանգներում 1963 թվին՝ Կոմիտասի անվան կվարտետի կատարմամբ: Թերթերը բարձր գնահատելով այն, նշում էին նրա հարուստ մեղեդայնությունը, ժողովրդական ակունքներին մոտիկ լինելը, գործիքավորման արվեստն ու բարձր տեխնիկան: Այդ հաջողությունները Կոմիտասի անվան կվարտետի և Միրզոյանի առջև բացեցին Սպիտակ տան դռները, և նրանց ընդունեց Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտը, որ այն ժամանակ Ջոն Քենեդին էր:

1962 թվին Միրզոյանն ավարտեց իր սիմֆոնիան: Այն առաջին անգամ կատարվեց կոմպոզիտորների միության համամիութենական երրորդ համագումարի ժամանակ, Մոսկվայի կոնսերվատորիայի մեծ դահլիճում, արժանացավ բացառիկ ուշադրության: «Մինչև այժմ գտնվում եմ Միրզոյանի սիմֆոնիայի թողած տպավորության տակ: Դա մեծ հաղթանակ է կոմպոզիտորի, Սովետական Հայաստանի արվեստի, մեր ողջ Միության մշակույթի համար»,— ասաց Շոստակովիչը: «Միրզոյանի սիմֆոնիան նոր էջ է բացում հայկական երաժըշտության համար»,— ասաց Արամ Խաչատրյանը: Շուտով Միրզոյանի այս ստեղծագործությունը նույնպես դուրս եկավ Սովետական Միության սահմաններից: 1963 թվին Կաբալևսկու և Արամ Խաչատրյանի ստեղծագործությունների կողքին հնչեց Բուխարեստում, ապա Հարավսլավիայի Զագրեբ քաղաքում, երաժըշտական ավանդական փեստիվալի ժամանակ, Շոստակովիչի և Վայնբերգի ստեղծագործությունների հետ ներկայացնելով Սովետական Միության սիմֆոնիկ երաժշտության դեմքը: Նույն թվի աշնանը այն հնչեց Անգլիայում՝ Լոնդոն, Մանչեստր և այլուր, սովետական երաժշտական և կատարողական արվեստի տասնօրյակին, սովետական խոշորագույն կոմպոզիտորներ Պրոկոֆևի, Շոստակովիչի, Խաչատրյանի, Կաբալևսկու և այլոց կողքին: Իսկ նույն թվին Փարիզում, կոմպոզիտորների միջազգային հավաքի ժամանակ, ուր, ըստ ավանդույթի, որոշվում էին այդ տարվա լավագույն սիմֆոնիկ ստեղծագործությունները՝ ռադիոյով պրոպագանդելու համար, ներկայացված 83 գործից, գաղտնի փակ քվեարկությամբ ընդունվեց 13-ը, որից 2-ը սովետական, այդ 2-ից մեկը Միրզոյանինն էր:

Ահա թե ինչ ընթացք առավ Երևանի կոնսերվատորիայի երբեմնի սան Էդվարդ Միրզոյանի ստեղծագործական ուղին, որը եղավ պահ, որ, ուր որ է, դուրս էր մնալու կոնսերվատորիայից:

1963 թվին Էդվարդ Միրզոյանին շնորհվել է հայկական հանրապետության ժողովրդական արտիստի կոչում, 1965 թվին նա ստացել է Երևանի Կոմիտասի անվան պետական կոնսերվատորիայի պրոֆեսորի աստիճան, ուր աշխատում է 1948 թվից, կոնսերվատորիայի այն ժամանակվա դիրեկտոր Սարաջևի հրավերով, և արդեն Միրզոյանի ձեռքի տակով անցել ու ասպարեզ են իջել երիտասարդ կոմպոզիտորների մի քանի սերունդ (Ջիվան Տեր-Թադևոսյան, Կոստանդին Օրբելյան, Ավետ Տերտերյան, Ստեփան Ջրբաշյան, Խաչատուր Ավետիսյան...)



1957 թվից Էդվարդ Միրզոյանը անընդմեջ գլխավորում է Հայաստանի կոմպոզիտորների միությունը:

Բնությունը քչերի նկատմամբ է այնքան շռայլ գտնվում, համադրելով մեկ մարդու մեջ մեծ արվեստագետին ու եռանդուն կազմակերպչին, այդ բոլորի հետ օժտելով նաև անձնական այնքան հմայքով ու այնքան զգայուն վերաբերմունքով ոչ միայն դեպի իր արվեստակից ընկերները, այլև հանդիպած յուրաքանչյուր մարդու:

Այսօր դուք կտեսնեք նրան կոմպոզիտորների միության իր առանձնասենյակում (որի դուռը բաց է ամեն այցելուի առջև), գլխովին խրված գործերի մեջ, կապված միության ու առանձին ստեղծագործողի առջև ծառացած արգելքները հաղթահարելու հետ, ընդհուպ մինչև նրանց անձնական կարիքները: Առնո Բաբաջանյանը նստած է Մոսկվայում, Միրզոյանն այստեղ հեռախոսները ձեռքից ցած չի դընում, մինչև համապատասխան հաստատություններում ավարտին չի հասցնում նրա փաստաթղթերի ձևակերպումը, այդ ընթացքում արանք է գտնում առողջապահության մինիստրի հետ խորհրդակցելու հիվանդ երաժըշտի բուժման շուրջը, բանակցում է հրատարակչության հետ մեկի գործերը հրատարակելու մասին, բազմաթիվ այլ հարցեր՝ կապված կոնսերվատորիայի, ֆիլհարմոնիայի, օպերայի, ռադիոյի և հեռուստատեսության հետ... Երեկոյան հավաքվում են քննարկելու մեկի նոր ստեղծագործությունները: Իսկ վաղը կըլսեք, որ նա երաժիշտների մի խմբի հետ շրջագայում է Հայաստանում, հանրապետության տարբեր շրջանների աշխատավորների առջև հանդես գալով ստեղծագործական հաշվետվություններով: Մյուս օրը կլսեք, որ մի այլ խմբի հետ Փարիզում, Բեյրութում, Լոս-Անժելոսում կամ

Նյու-Յորքում հնչեցնում է հայ երգը, ունկնդիրներին ստիպելով բուռն ծափահարել հայ երգը, օտար թերթերից հիացմունքի ջերմ խոսքեր կորզելով: Արտասահմանից վերադառնալու լուրը դեռ չառած, մեկ էլ կիմանաք, որ նա սովետական անծայր հայրենիքի հեռավոր Սախալին կղզում է, գլխավորում է այնտեղ հայ երաժշտության շաբաթը: Հազիվ ոտք դրած Երևան, նա կմեկնի Դիլիջան՝ կոմպոզիտորների ստեղծագործական տունը. դժվար է ասել Միրզոյանը Երևանի իր սեփական տա՞նն է շատ լինում, թե՞ այստեղ, ուր ստեղծված են երաժիշտի աշխատանքի համար հեքիաթային պայմաններ. երկու տասնյակից ավելի երկհարկանի մենատներ, ցրված անտառապատ ձորալանջին, առավոտյան քեզ արթնացնում է դեղձանիկների երգն ու ճռվողյունը, որ արեգակի առաջին ճառագայթներից դեռ շատ վաղ կտցահարում են լուսամուտդ, քեզ դուրս կանչում, որ կերն ընդունեն հենց քո ափի միջից... Ծաղիկների բուրմունքը բաց դռնից ու լուսամուտից քեզ հետ ներս են խուժում և քո մեջ վերածվում մեղեդիների, հավաքիր փնջիր և փունջ-փունջ տուր աշխարհին... Այստեղ հանգստանալու և աշխատելու են գալիս ոչ միայն հայ ու եղբայրական հանրապետությունների, այլև արտասահմանյան նշանավոր կոմպոզիտորներ, մտնում իրար հետ ստեղծագործական կապերի մեջ, մտքեր ու կարծիքներ փոխանակում երաժշտական արվեստի արդի խնդիրների շուրջը, փոխադարձ հարստացնում իրար:

Դուք եթե Դիլիջանում ուզում եք գտնել Էդվարդ Միրզոյանին, անցեք մենատների առջևով, որ տան շեմին տեսնեք նստած շըների ու շնիկների մի խումբ՝ կուշտ և ուրախ, այդ դուռն էլ բախեք, այդտեղ է ուղեկցել Միրզոյանին Դիլիջանի կոմպոզիտորների տանն ապաստանող շների խումբը: Արդեն ալեխառն Միրզոյանին այսօր էլ չի լքել շների նկատմամբ մանկուց եկող սերը: Որքա՞ն ճիշտ է ասել ֆրանսիացի մեծ գրողը՝ մեզնից յուրաքանչյուրը գալիս է իր մանկությունից:

*ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ*

# ԹԵՎԱՎՈՐ ԽՈՍՔԵՐ

*Մոսկվայի «Մանկական գրականություն» հրատարակչությունը լույս է ընծայել մի շատ հետաքրքիր գիրք՝ «Բառերի կյանքը» վերնագրով. հեղինակը՝ Էդ. Վարդանյան: Նա հավաքել և իր գրքում մատչելի լեզվով վերաշարադրել է պատմականորեն ձևավորված բազմաթիվ թևավոր արտահայտությունների, ինքնատիպ դարձվածքների բացատրությունները:*

*Դրավիչ և ուսանելի շատ բան կա դրանց մեջ: Այս համարից սկսած՝ տպագրում ենք դրանցից ամենահետաքրքիրներն ու տարածվածները, որ թարգմանել է Սոնա Այունցը:*



## ԲԱՐԴՈՒՂԻՄԵՈՍՅԱՆ ԳԻՇԵՐ

Այս արտահայտությունն արդեն կապված է ոչ թե հեքիաթի, այլ սարսափելի իրողության հետ: 1572 թվականի օգոստոսի 23-ի լույս 24-ի գիշերը, սուրբ Բարդուղիմեոսի տոնախմբության գիշերը, Փարիզում եկեղեցու և թագավորի հրամանով դավադրաբար սպանվում են մի քանի հազար «հերետիկոս» հուգենոտներ՝ կաթոլիկ եկեղեցու բարեփոխման կողմնակիցներ: Գուցե դուք այդ մասին կարդացե՞լ եք Ա. Դյումայի կամ Պ. Մերիմեի գրքերում...

Այդ ժամանակից ի վեր «բարդուղիմեոսյան գիշեր» արտահայտությունն այլաբանորեն նշանակում է հակառակորդի անսպասելի, զանգվածային ոչնչացում, որն, իհարկե, տեղի չի ունենում բացահայտ, ազնիվ ճակատամարտում:

## ԲԱԼԹԱԶԱՐԻ ԽՆՋՈՒՅՔԸ

Այս արտահայտությունը կապված է մի հինավուրց լեգենդի հետ: Աշխարհակալ գոռոզ Բաբելոնը անկում էր ապրում: Մի անգամ բաբելոնյան թագավորության վերջին արքա Բալթազարը խնջույքի է հրավիրում իր մերձավորներին: Գինին հոսում է գետի պես, և գինարբուքի մասնակիցները գովերգում են օտար աստվածներին: Հանկարծ պատի վրա հայտնվում է մի հրեղեն ձեռք և գրում այս խորհրդավոր բառերը. «Մենե, տեկել, փարես»: Կանչում են Դանիել իմաստունին: Նա այսպես է մեկնաբանում. «Մենե»— նշանակում է՝ «աստված հանրագումարի բերեց», «տեկել»— «դու թեթևամիտ ես», «փարես»— «քո թագավորությունը պիտի նվաճեն պարսիկները»:



Նույն այդ գիշերը Բալթազարը զոհվում է քաղաքը պաշարած պարսիկների հետ ունեցած կռվում և Բաբելոնը դադարում է գոյություն ունենալ: Սա է ավանդությունը:

Հարկ չկա ասելու, որ Բաբելոնի անկումը ամենևին էլ այդպես չի եղել, ինչպես լեգենդն է պատմում: Բայց ի՞նչ նկատի ունենք, երբ ասում ենք «Բալթազարի խնջույքը»: Խրախճանք դժբախտության նախօրեին՝ ահա թե ինչ:

## ՎԱԼՊՈՒՐԳՅԱՆ ԳԻՇԵՐ

Դուք գիտե՞ք Գունոյի «Ֆաուստ» օպերան: Ազդագրերում հաճախ գրվում է «Ֆաուստ», բայց երբեմն էլ՝ «Ֆաուստ. Վալպուրգյան գիշերով»: Ի՞նչ գիշեր է դա:

Ըստ միջնադարյան հավատալիքի, սուրբ Վալպուրգիայի գիշերը (կաթոլիկական օրացույցով՝ մայիսի 1-ին) սատանաները, կախարդները և այլևայլ պիղծ ոգիներ, հավաքվում են Գերմանիայի Բրոկեն վայրի լեռան վրա՝ կատաղի պարերի և մոլեգին հրճվանքի համար: Ահա չար ոգիների շվայտ խրախճանքի պատկերն են տվել նաև գերմանական մեծ բանաստեղծն իր «Ֆաուստ» ողբերգության մեջ և ֆրանսիացի հռչակավոր կոմպոզիտորն իր օպերայի վերջին արարում:

Որտեղի՞ց է գալիս այս սնահավատությունը: Ըստ երևույթին սա ծագել է այն ժամանակ, երբ դեռևս ողջ Եվրոպան չէր ընդունել քրիստոնեություն: Վերջին հեթանոսները գարնան տոնախմբությունները անց էին կացնում գաղտնի հավաքատեղիներում, իսկ քրիստոնյաներին այդ հավաքատեղիների մասին պատմում էին ամենատեսակի սարսափելի բաներ: Այժմ մեզ համար «վալպուրգյան գիշեր» արտահայտությունը նշանակում է չար, վտանգավոր մարդկանց սանձարձակ ուրախությունը: Երբեմն այսպես են անվանում մոլեգին խրախճանքը:





արձրահասակ է ու նիհար, արտակարգ ուղիղ և հպարտ կեցվածք ունի: Նույնիսկ նստած ժամանակ նկատելի է, որ ձիգ է ու հավաք:

Զինվորական չէ, բայց ամառը դարչնագույն համազգեստ է հագնում, ծմռանը նույնը՝ վրայից շինել: Եթե հարցնեք, թե երբվա ծառայե՞լ է, կպատասխանի. «Այո՛, 1914 թվականին, 4-րդ կամավոր գնդում»:

Մինչև այսօր էլ զինվորականին հատուկ մի քանի հատկություններ՝ ճշտապահությունը, խստակյացությունը, որոշածն անպայման իրականացնելու ձգտումը, ակնհայտ են:

Դատելով առույգ շարժումներից, մտքի պայծառությունից և հետաքրքրությունների լայն շրջանակից, կարելի է կարծել, որ հազիվ 65 տարեկան է: Իրականում, սակայն, նա 80 տարեկան է: Ուղիղ 80 տարեկան:

Ազգանունը Պետրոսյան է, անունը՝ Արտաշես: Սակայն, հանգամանքների բերումով երիտասարդ ժամանակ նրան երկրորդ անունով են կոչել՝ Զումշուդ: Եվ Լենինականում, որտեղ ապրում է նա, այդպես էլ ճանաչում են՝ Զումշուդ Պետրոսյան:

Կարծում եմ նախնական ծանոթության համար այսքանը բավական է: Իսկ այժմ այն մասին, թե ինչու է ակնարկը վերնագրված «Զարմանալի մարդը»:

Նա խոստովանում է. «Իմ նվիրական երազանքն էր տանս մի անկյունում ունենալ հայ նշանավոր գործիչների, գրողների, զորավարների, նկարիչների, երաժիշտների նկարներ: Ցանկանում էի ունենալ այն մարդկանց նկարները, ովքեր մեր ժողովրդին մեծ ծառայություններ են մատուցել, ովքեր իրենց արժեքավոր ու բարի գործերով գնահատվել են աշխարհի տարբեր ժողովուրդների կողմից:

Նկարները աստիճանաբար հավաքեցի, իսկ հետո սկսեցի նրանց կյանքի մասին հետաքրքիր տեղեկություններ գրի առնել, հետո հայ ժողովրդի պատմության վերաբերյալ եզակի գրքեր, թերթեր ու ամսագրեր ձեռք բերեցի...»

Եվ այսպես... Ուղիղ երեսուն տարի մարդը հավաքել է: Այդ ընթացքում կարդացել և ուսումնասիրել է հայ ժողովրդի պատմության վերաբերյալ բազմաթիվ գրքեր, համառորեն փնտրել ու գտել է նորերը՝ նոր գրքեր, նոր փաստաթղթեր, որոնք գրվել ու լույս են տեսել նախասովետական Հայաստանում, Սովետական Միությունում և արտասահմանում: Սեփական ժողովրդի պատմությունն ուսումնասիրել է ոչ միայն գրքերի ու նկարների, այլև տարազների, դրամների, դրոշմանիշերի, կենդանի զրույցների միջոցով:

# ԶԱՐՄԱՆԱԼԻ ՄԱՐԴԸ

*ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ*

Եվ հանկարծ պարզվել է, որ իր հավաքած հսկայական նյութը պահելու համար և, մանավանդ, շրջապատի մարդկանց ցուցադրելու համար, արկղերն ու պահարանները պիտանի չեն:

Թանգարան է պետք, իսկական թանգարան:

Եվ նա որոշել է բակում, իր բնակարանի կողքին, թանգարան կառուցել: Հիմքը փորելիս ծանոթներն ու բարեկամները հարցրել են. «Ի՞նչ ես անում»: «Թանգարան եմ շինում»,— եղել է պատասխանը: «Թանգարա՞ն»,— զարմանքով հարցրել են նրան: «Այո, թանգարան»,— կրկնել է նա:

Նայած ով ինչպես է ընկալել: Ոմանք հետաքրքրությամբ, ոմանք թերահավատությամբ, ոմանք նույնիսկ քմծիծաղով, որ բխում էր անիրականանալի թվացող այդ որոշումից: «Մի տեսե՞ք, մարդը թանգարան է շինում»:

Ի զարմանս բոլորի, սենյակը կառուցվեց, երկարությունը՝ 5 մետր, լայնությունը՝ 4: Դռան վրա կախվեց ցուցանակը՝ «ԹԱՆԳԱՐԱՆ»: Սենյակը, սակայն, փոքր էր, ցուցադրելու համար այն ամենը, ինչ հավաքված էր երեսուն տարում:

«Եվ ես որոշեցի իմ թանգարանի պատերի թիվը կրկնապատկել, եռապատկել, քառապատկել...»

Եվ տեսեք, թե ինչպիսի հնարամտությամբ. պատերի երկայնքով կողք-կողքի տեղադրեց չորսական ռելսեր և դրանց վրա ամրացրեց բարձրադիր, շարժական ցուցափեղկեր: Հասկանալի է, չէ՞, սենյակի հիմնապատերին փակցրած նմուշները դիտելու համար, պետք է մի կողմ հրել ռելսերի վրա տեղադրված գնացող-եկող «պատերը»: Եվ այդպիսով, մեկ սենյակը երեք մեծ սենյակի մակերես ստացավ:

Պատկերացնո՞ւմ եք իմ հիացմունքը, երբ ես, ձմռան ցուրտ մի օր, չտաքացվող այդ թանգարանում, կանգնած բարձրահասակ, հպարտ կեցվածքով* մարդու կողքին, դիտում էի, թե նա ինչպես էր ռելսերի վրա աջ ու ձախ հրում ցուցափեղկերը, և նախքան մանրամասներին անցնելը, շեշտված, մի քիչ էլ հայտարարելու երանգով, ասում էր տվյալ բաժնի խորագիրը:

Խոստովանում եմ, այդ պահին ես ոչ միայն հիացած էի, այլև չափազանց զարմացած. պատերին և ալբոմների մեջ 10.000 լուսանկար, գրադարակներում 2000 գիրք, որոնց մեջ եզակի հրատարակություններ՝ 1812, 1890, 1915 թվականների...

Թղթադրամների հարուստ մի հավաքածու, բաց թողնված ցարական Ռուսաստանում, նախասովետական Հայաստանում, Սովետական Միությունում, արտասահմանյան երկրներում, սկսած 1896 թվականից մինչև մեր օրերը:

Հայկական տարազների լուսանկարներ ու գծանկարներ:

Երկու մեծադիր ալբոմ Լենինականի հին բնակիչների՝ Գյումրի-Ալեքսանդրապոլի նշանավոր քաղաքացիների լուսանկարներով ու կենսագրական տեղեկություններով:

Ուզում եմ ձեզ հաղորդել մի փաստ ևս, որը, թերևս, ամենահետաքրքրականն է այս պատմության մեջ և որը լսելիս ես ապշահար նայեցի զրուցակցիս. լսածըս այնքան անհավանական թվաց, որ ես խնդրեցի նրան կրկնել ասածը:

«Եթե ես որևէ հազվադեպ գիրք եմ տեսնում, կարդում եմ ու հավանում, բայց չեմ կարողանում ունենալ իմ սեփականը, գիրքը արտագրում եմ: Այդպես ես արտագրել եմ 14 հատոր, բոլորն էլ հայ ժողովրդի պատմության վերաբերյալ»:

Այդ բանը նա ասաց այնպես պարզ ու հասարակ, կարծես խոսքը չափազանց առօրյա և սովորական բանի վերաբերվեր:

Աստիճանաբար համոզվում էի, որ ինձ բախտ է վիճակվել ծանոթանալ արտակարգ բնավորության տեր մի անձնավորության հետ, իր ժողովրդի անցյալի վշտերով տառապող և ներկա հաջողություններով ուրախացող, մեծ նվիրումի ընդունակ մի մարդու հետ, որից շատ բան ունեմ սովորելու: Եվ որ նա, այդ զարմանալի մարդը, առիթը բաց չի թողնում ասելու.

«Ամեն ոք պետք է սիրի իր հայրենիքը, իսկ սիրելու համար, պետք է լավ իմանա իր ժողովրդի պատմությունը: Լավ իմանա հարևան ժողովուրդների պատմությունը: Իսկ գիտելիքները օդից չեն վերցվում: Իմ մեծագույն երազանքն ու նպատակն է եղել ստեղծել այս թանգարանը, օգնել երիտասարդներին, որ դիտեն ու խորամուխ լինեն այս ամենի մեջ»:

Այս բոլորից հետո երևի այնքան էլ հարմար չէր լինի խոսել այն մասին, որ եզակի այդ գրքերը, նկարներն ու ալբոմները, թանգարանի շենքն ու լրացուցիչ «պատերը» և մյուս, մյուս բաները մեծ գումար արժեն: Իրոք, երևի հարմար չէր լինի, եթե պատասխանն այսպիսին չլիներ.

«Մարդկանց լավություն չես կարող անել, եթե ինքդ քեզ նեղություն չտաս: Եվ բացի այդ՝ ի՞նչ է պետք ապրելու համար, շատ քիչ բան: Տարիների իմ վաստակածի մեծ մասը ես ծախսել եմ ահա այս ձևով: Իբրև վարձատրություն ես ընդունում եմ այցելուների վերաբերմունքը և այն, որ ապագայում իմ քաղաքի երիտասարդներին ինձնից այսպիսի հիշատակ կմնա»:

Թանգարանի այցելուներն անպակաս են: Երեխաներ, երիտասարդներ, տարեցներ, քաղաքի դպրոցականները, Լենինական այցելող նշանավոր հյուրերը՝ ականավոր գործիչներ, գրողներ, արվեստագետներ...

Հուշերն ու հիացական տպավորություններն ամփոփված են երկու մեծ մատյաններում:

«Մենք այստեղ շատ բան իմացանք և սովորեցինք և խորապես շնորհակալ ենք ու երախտապարտ»:




# ԻՏԱԼԻԱՅԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ

Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին Իտալիայի տարբեր քաղաքներում կոմունիստ-պարտիզանների նախաձեռնությամբ ստեղծվեցին պիոներական ջոկատներ: Դրանք տարբեր անուններ էին կրում՝ «Պատանի գարիբալդիականներ», «Պատանի հետախույզների միություն», «Իտալիայի հույս»: Պատերազմի ավարտից չորս տարի անց, ջոկատների ներկայացուցիչների հավաքում ստեղծվեց Իտալիայի Պիոներների միությունը, որը մի քանի տարվա ընթացքում դարձավ երեխաների միակ կազմակերպությունը: Ետպատերազմյան ավերածությունների, քաղաքական սուր պայքարի ծանր տարիներ էին դրանք, և երեխաների կազմակերպության ստեղծումը ընթանում էր դժվարին պայմաններում՝ պիոներական աշխատողներ չկային, նյութական հնարավորություններ չկային: Դրանց պետք է ավելացնել և սկաուտների ուժեղ ազդեցությունը: 60-ական թվականների սկզբին պիոներական կազմակերպությունը փաստորեն գոյություն չուներ: Միայն մի քանի վայրերում էին մնացել առանձին խմբեր ու ջոկատներ:

Վերջին տարիներին Իտալիայում ակտիվ վերելք է ապրում պիոներական կազմակերպությունը, որը բացատրվում է Իտալիայի կոմունիստական կուսակցության դիրքերի ամրապնդմամբ և միջազգային մանկա-պատանեկան շարժումների ակտիվացմամբ:

Իտալիայի Պիոներների միությունը աշխարհիկ, անկախ և դեմոկրատական կազմակերպություն է, իր մեջ ներգրավում է վեցից մինչև տասնհինգ տարեկան երեխաների: Կազմակերպության անդամ են հանդիսանում նաև մեծահասակները՝ ղեկավարներն ու դաստիարակները: Միությունը իր առջև խնդիր է դրել. աճող սերունդը դաստիարակել սոցիալիզմի ու դեմոկրատիայի ոգով և Դիմադրության գաղափարներով:

Պիոներական ղեկավարները ձգտում են երեխաներին ծանոթացնել Իտալիայի բանվորական շարժման պատմությանը, Իտալիայի ժողովրդական հերոսներ Սպարտակի, Գարիբալդիի, Անտոնիո Գրամշիի, Պալմիրո Տոլյատտիի, Չերվի եղբայրների կյանքին ու գործունեությանը:

Միությունը երեխաներին դաստիարակում է համերաշխության, խաղաղության, ազգային անկախության ոգով և անհանդուրժողականությամբ սոցիալական անհավասարության նկատմամբ:

Իտալիայի պիոներների խորհրդանշանը հսկա կաղնի է, որի վրա փայլփլում են արծաթե յոթ աստղիկներ: Ծառի ճյուղերը կոտրված են, բայց նրանց վրա ծլարձակել են մատղաշ, կանաչ բողբոջները: Հին կաղնին իտալական Դիմադրության առասպելական հերոս Չերվի պապի խորհրդանիշն է: Արծաթե աստղիկներն ու կոտրված ճյուղերը հիշեցնում են ֆաշիստների կողմից գնդակահարված նրա յոթ տղաների սխրանքը: Կանաչ բողբոջները Իտալիայի մատաղ սերունդն է՝ նրա պիոներները, որոնք աճում ու առնականանում են: Պիոներների խորհրդանշանը պատկերված է միության դրոշի և պիոներական կրծքանշանի վրա:

Կարմիր եզրանախշով պիոներական կանաչ վզկապը ֆաշիզմի դեմ մարտնչած հերոսների հիշատակը պահպանող և Դիմադրության ավանդույթներին հավատարիմ նոր սերնդի խորհրդանիշն է:

Կարմիր եզրանախշը՝ ապագա սոցիալիստական Իտալիայի խորհրդանիշն է, որի հաղթանակին են նվիրվել պիոներները:

Միության յուրաքանչյուր անդամի տրվում է անդամատոմս. այն ստանում են և՛ պիոներները, և՛ ջոկատավարները: «Խոստման տոնի» օրը, երբ նոր անդամներ են ներգրավվում միության մեջ, նրանք հանդիսավոր երդում են տալիս. «Միշտ բարձր գնահատել Դիմադրության նշանակությունը, հավատարիմ մնել ազատության, արդարության և խաղաղության գաղափարներին: Ամրապնդել բարեկամությունը ամբողջ աշխարհի աշխատավորության երեխաների հետ, ինտերնացիոնալ համերաշխություն ֆաշիզմի ու գաղութատիրության դեմ պայքարող երկրների հետ»:

Միության հիմքը՝ դրուժինան՝ իր մեջ միավորում է որոշակի տերիտորիայում բնակվող պիոներներին: Դրուժինան ղեկավարում են ջոկատավարները՝ կրտսերներն ու ավագները, իրենց աշխատանքում օգտվելով ակտիվ պիոներների աջակցությունից:

Դրուժինայում կարևոր տեղ է տրվում հնարամիտ-պիոներին, որին ընտրում են դրուժինայի ընդհանուր հավաքում և հաստատում են միության գավառային կոմիտեում: Ամեն տարի իտալացի պիոներները գալիս են Արտեկ հանգստանալու, որպես

կարգ, հետո իրենց դրուժինաներում դառնում են պիոներ-ընտրամիտներ:

Միության բարձրագույն օրգանը՝ Ազգային համագումարն է: Նրան ենթարկվում են պիոներական դրուժինաների ժողովները ու գավառային հավաքները:

Միությունում լայն տարածում են գտել բազմազան խմբակները ու ակումբները: Դրանք քիչ բանով են տարբերվում մեր դրուժինաներում ու ջոկատներում գործող ակումբներից ու խմբակներից: Պիոներները կոմունիստների, աշխատավորների, դեմոկրատական երիտասարդության հետ մասնակցում են ելույթներին, ցույցերին, «Ունիտա» թեր-

# ՄԻՈՒԹՅՈՒՆԸ

թի (Իտալիայի կոմկուսի օրգան) տոներին: Պատերազմի ու կամայականությունների դեմ ստորագրություններ են հավաքում, դիմումներ ու թերթիկներ են տարածում: Գյուղերում և քաղաքներում ագիտացիոն աշխատանքներ են տանում:

Ամռանը պիոներները արշավների ու էքսկուրսիաների են մեկնում: Բարձր սարերի գրկում տեղավորված Լիգոնկիոյում միությունը ոչ մեծ ճամբար է կազմակերպում պիոներական ակտիվի համար:

Ազգային և գավառային կոմիտեների լուրջ ուշադրության շնորհիվ տարեցտարի ավելանում է միության անդամների թիվը: Չնայած բազմաթիվ դժվարություններին ու հակասություններին, որոնցով հագեցած է երկրի կյանքը, այնուամենայնիվ Պիոներների միությունը նշանակալից հասարակական երևույթ է այսօրվա Իտալիայում:

# ՉՀԱՍՑՐԵՑ ՄԵԾԱՆԱԼ

## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ



Հնչեց դռան զանգը: Տիկին Աննան հուշիկ քայլերով մոտեցավ ու բացեց այն: Փոստատարն էր: Նա անվստահ բացեց ստացած նամակը: Նամակը պիոներներից էր: Նրանք խնդրում էին պատմել իր որդու՝ Սովետական Միության հերոս Ալեքսանդր (Շահեն) Իվանի Ղասաբյանի մասին: Տիկին Աննան հուզվեց մինչև հոգու խորքը: Նա գրիչ վերցրեց ու գրեց այն, ինչ կարող էր գրել մայրը իր կորցրած որդու մասին: Մոր արցունքները տեղ-տեղ թրջել էին նամակի թուղթը: Ինչ լավ է, որ չնայած տարիներ են անցել, բայց մարդիկ չեն մոռացել իր Ալեքսանդրին:

Իսկ պիոներները շարունակում էին իրենց որոնումները: Նրանք դիմեցին Ղասաբյանի մարտական ու դպրոցական ընկերներին՝ խնդրելով հուշեր պատմել: Ճակատային թերթերից նրանք իմացան, որ Սովետական Միության հերոս օդաչու, գվարդիայի լեյտենանտ Ալեքսանդր (Շահեն) Իվանի Ղասաբյանը կատարել է 250 մարտական թռիչք, մասնակցել 225 օդային մարտի, ցած գցել թշնամու 9 ինքնաթիռ և ոչնչացրել մեծ քանակությամբ տեխնիկա: Նա պարգևատրվել է երկու Կարմիր դրոշի և մեկ Լենինի շքանշանով:

Ղասաբյանը ծնվել է 1922 թվականին Ստավրոպոլ քաղաքում, բանվորի ընտանիքում: Վաղ հասակում զրկվում է մորից: Նրան խնամում և դաստիարակում է Աննա Բաևան: Դպրոցը ավարտում է ոսկե մեդալով: Դեռ մանկուց Ալեքսանդր Ղասաբյանը երազում էր օդաչու դառնալ: 9-րդ դասարանում սովորելիս նա արդեն մասնակցում էր աէրոակումբի պարապմունքներին: Այնուհետև Ղասաբյանը ուսանում է Եյսկ քաղաքի ծովային ավիացիայի ուսումնարանում: Երկու տարվա ուսուցման ծրագիրը նա յուրացնում է մեկ տարում և գերազանց ավարտելով ուսումնարանը՝ դառնում է ծովային օդաչու: 1941 թվականին Ղասաբյանը մեկնեց ռազմաճակատ, մարտնչեց հայրենիքի պաշտպանների առաջին շարքերում և քաջաբար զոհվեց:

Նրա կարճատև, բայց սխրանքներով լի կյանքի մասին պիոներական հավաքում հերթով պատմում էին նրա ընկերները, իսկ մայրը միայն արցունքներն էր սրբում: Բոլորի համար իր որդին լեգենդար հերոս էր, իսկ իր համար՝ լուսանկարից ժպտացող փոքրիկ Ալեքսանդրը, որը այդպես էլ չհասցրեց մեծանալ:

*ՔՆԱՐԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ*





*Ոչ ոք չի մոռացվել, ոչինչ չի մոռացվել*

# ԷՐՄԻՏԱԺԻ ՍԽՐԱՆՔԸ

Արվեստի և մշակույթի քաղաք է Լենինգրադը, հեղափոխության և բարեկամության, գիտության և արդյունաբերության: Էլի շատ բնորոշումներ ու էպիտետներ կարելի է տալ Լենինգրադին, առավել շռայլ ու հիացական, և դրանցից ոչ մեկը չափազանցություն չի լինի: Սակայն պատմենք Լենինգրադի պատերազմյան տարիների հերոսության դրվագներից մեկը:

Հայրենական մեծ պատերազմի փառապանծ ճակատամարտերի, հաղթարշավների մեջ առանձնահատուկ տեղ է գրավում Լենինգրադի պաշտպանությունը: Մոտ 900 օր տևած այդ պաշտպանությունը սովետական ժողովրդի տոկունության, հավատի և հաղթանակի կամքի ամենացայտուն օրինակներից է: Անընդհատ ռմբակոծությունները, սովը, ցուրտը չկարողացան ընկճել քաղաքի բնակիչներին: Մարտիկ էին բոլոր լենինգրադցիները՝ կին թե տղամարդ, ծեր թե մանուկ, իսկ ամեն շենք դարձել էր մի անառիկ ամրոց: Քաղաքների պես, շենքերն էլ իրենց պատմությունն ունեն: Բազում իրադարձությունների մասնակից ու վկա հանդիսացավ պետական Էրմիտաժը:

Մարդկային քաղաքակրթության գանձարան է Էրմիտաժը, որը ցուցանմուշների հարստությամբ և նշանակությամբ՝ ամենահռչակավոր պատկերասրահ-թանգարաններից մեկն է աշխարհում: Էրմիտաժ մտնողը մի պարմանահրաշ ճանապարհորդություն է կատարում նախնադարյան ժամանակներից մինչև մեր օրերը: Այդ ճանապարհորդության ընթացքում այցելուն ծանոթանում է նախամարդու պարզունակ գործիքներին, հին Եգիպտոսի, Ուրարտուի, արևելյան ժողովուրդների և անտիկ արվեստի ստեղծագործություններին, աշխարհում միակ սկյութական հնություններին, իտալական, հոլանդական, իսպանական, ֆրանսիական և այլ երկրների կերպարվեստին ու քանդակագործությանը, ոսկերչական ու արծաթագործական արժեքավոր իրերին, դրամների ու մեդալների հավաքածուներին... Անհնար է բոլորը թվարկել կամ նկարագրել: Էրմիտաժը համարյա Լենինգրադի հասակակիցն է, և նրա նոր կյանքը, ինչպես քաղաքի ու մեր երկրի, սկսվեց Հոկտեմբերյան Մեծ հեղափոխությունից հետո: Էրմիտաժը դարձավ ժողովրդի սեփականությունը, արվեստի և մշակույթի համալսարան:

Էրմիտաժի հետ անխզելիորեն կապված է նշանավոր գիտնական, ակադեմիկոս Հովսեփ Օրբելու անունը: Զարմանք է պատճառում, թե մի կյանքը ինչպես է բավականացրել անելու այդքան բան. Անիի և Ամբերդի հետազոտություններ, ուրարտական սեպագրերի և Սուզդալյան Ռուսիայի տաճարների ուսումնասիրություններ, Կիլիկիայի, Ախթամարի, Ղրիմի, Հնդկաստանի, Միջին Ասիայի, Պարսկաստանի մշակույթի ու պատմության բազմաթիվ կարևոր հարցերի լուսաբանում, Մխիթար Գոշի, Վարդան Այգեկցու, «Սասնա ծռերի» և հայագիտական այլ հարցերի նվիրված աշխատություններ: Այս ամենը դեռ Հովսեփ Օրբելու ամբողջական դիմանկարը չեն տալիս: 1919 թվին նա դառնում է Էրմիտաժի հնությունների բաժնի խորհրդի անդամ, 1924 թվին նշանակվում է դիրեկտորի օգնական, իսկ 1934 թվի հուլիսին՝ Էրմիտաժի դիրեկտոր: Հովսեփ Օրբելու ղեկավարությամբ Էրմիտաժը վերելք է ապրում: Աշխատանքները դրվում են գիտական բարձր հիմքերի վրա, ուժեղանում են կապերը աշխարհի շատ երկրների մշակույթի և գիտության օջախների հետ:

Պատերազմը մեծ վտանգ էր նաև Էրմիտաժի խաղաղ ու ստեղծագործ աշխատանքի համար: Հայտնի էր, որ ֆաշիստական բարբարոսները հատուկ առաջադրանք ունեին կավթել և Գերմանիա տեղափոխել պատկերասրահների և թանգարանների հավաքածուները: Այդ նկատի ունենալով, Հովսեփ Օրբելին անմիջապես կազմակերպում է Էրմիտաժի էվակուացումը: Առավել արժեքավոր ցուցանմուշներով բեռնված առաջին գնացքը, աշխատակիցների ուղեկցությամբ, մեկնում է հուլիսի 1-ին: Ամեն անգամ հուզված ու անհանգիստ Օրբելին ստուգում էր վագոնները, բարի խոսքով մխիթարում մեկնողներին: Հովսեփ Օրբելին մնում է թշնամիներով շրջապատված Լենինգրադում: Պետք էր ապահովել Էրմիտաժի անվտանգությունը: Կարճ ժամանակում կառուցվում է ռմբապաստարան, ցուցանմուշները անվնաս պահպանելու հարմարություններ: Բացի այդ, Էրմիտաժ են տեղափոխվում Լենինգրադի և նրա շրջակայքում գտնվող թանգարանների հավաքածուները: Այս բոլորի հետ Էրմիտաժում չի դադարում ստեղծագործ աշխատանքը: Հանդիսավոր նշվում է Նիզամու և Նավոյի հոբելյանները: Նիստի մասնակիցները զինվորական հագուստներով և զինված էին, պատրաստ՝ անհրաժեշտության դեպքում մարտական գործողությունների մեջ մտնելու: Հովսեփ

# ԱՆՄԱՐԴԿԱՅԻՆ ՈՐՍՈՐԴՈՒԹՅՈՒՆ

Լաբրադոր թերակղզու սառուցյալ ափերը մեկնեցին մոտ քառասուն ուղղաթիռ և նույնքան նավակ, որոնք փոխադրում էին հատուկ գավազաններով և դաշույններով զինված մարդկանց: Սկսվել էր փոկերի որսաշրջանը: Մարդիկ մոտենում էին մի մեծ նախիրի: Փոկերի ձագերը խոշոր ու խոնավ աչքերով հետաքրքրասիրությամբ նայում էին զգուշորեն մոտեցող օտարականներին: Նրանք վախ չէին զգում ու չէին փախչում: Որսորդները սկսեցին գավազաններով աջ ու ձախ անխղճորեն խփել: Լողալ չիմանալով՝ փոկերի ձագերը այս ու այն կողմ էին սողում, փորձում խուսափել հարվածներից: Մարդիկ այնուհետև շուռ էին տալիս ձագերին, ոտքերով կոխկրտում նրանց պարանոցի երակները, և արագ շարժումներով դեռ գալարվող կենդանուն ճեղքում վզից մինչև պոչը՝ դուրս թափում փորոտիքը և մորթազերծ անում:

Ամեն տարի ձմռանը հյուսիսի ընդարձակ սառցատափաստաններում հարյուրավոր նման ողբերգություններ են տեղի ունենում: Եվ դա միայն այն պատճառով, որ Ամերիկայի ու Եվրոպայի առևտրականներին ու որսորդներին անչափ դուր է գալիս փոկերի ձագերի հարթ մորթին, որոնք տարվա այդ եղանակին փոխում են իրենց սպիտակ գույնը՝ բաց մոխրագույնի: Փոկերի ցեղը գտնվում է բնաջնջման սպառնալիքի տակ, առավել ևս այն պատճառով, որ յուրաքանչյուր տարի նման բախտի են արժանանում ոչ միայն ձագերը, այլև երկուհարյուր հազար մեծ փոկեր: Ինքնապաշտպանության ոչ մի միջոց չունեցող այդ զգայուն և երկչոտ կաթնասունների թիվը հարյուր տարի առաջ Հյուսիսային Ամերիկայի ափերում մոտ քսան միլիոն էր: 1935 թվին նրանք միայն չորս միլիոն էին, իսկ 1950 թվին այդ թիվը իջավ երեք միլիոնի: Ծովերի ընդարձակ տարածություններում, ինչպես նաև Լաբրադորի ափերին տեղի ունեցող փոկերի անխիղճ որսը հասցրեց այն բանին, որ այսօր նրանց թիվը հազիվ մեկ միլիոնի է հասնում: Մասնագետները գտնում են, որ փոկերը կանհետանան մինչև 1980 թվականը:

Յուրաքանչյուր որսորդություն արյունալի է, բայց փոկերի որսը գերազանցում է բոլորին: Որսորդները ձագերին սրախողխող են անում մայրերի աչքի առաջ: Այս վայրագությունը բողոքի ալիք բարձրացրեց ամբողջ աշխարհում: Մինչև 1964 թիվը փոկերի որսը կատարվում էր առանց որևէ հսկողության: Տասը տարի առաջ կանադացի երկու կինոօպերատոր որոշեցին սառուցյալ անապատներում աշխատող որսորդների ծանր ու քիչ հայտնի կյանքը փառաբանող կինոնկար ստեղծել: Տեղ հասնելով, նրանք տեսան՝ որսի գործիքներով զինված մարդկանց, լսեցին մայր փոկերի սրտաճմլիկ ռռնոցները և ձագերի խլացուցիչ վայնասունները: Նկարահանումից հետո անհրաժեշտ եղավ կրճատել որոշ տեսարաններ, բայց այդ վիճակով էլ կինոնկարի ցուցադրումը Կանադայի հասարակությանը շատ բան բացահայտեց: Մարդիկ պահանջում էին անհապաղ բարելավել փոկերի որսի եղանակը: Նյու Բրյունսվիկի կենդանիների պաշտպանության կազմակերպությունը առաջարկեց լիովին արգելել փոկերի որսը: Մեկ տարի հետո Կանադայի կառավարությունը ստիպված եղավ օրինագիծ ընդունել, ըստ որի սահմանվեց որսի որոշ կանոններ: Արգելվեց կեռը, հաստատվեց գավազանի չափը և այլն: Սակայն այս կանոններից հետո էլ փոկերի որսը կատարվում է նույն դաժանությամբ:

Կենդանիների պաշտպանության կազմակերպությունը և գիտության մարդիկ փորձեցին ուրիշ միջոցներով ազդել կառավարության վրա, բայց արդյունքի չհասան, քանի որ որսը կատարվում է երկրի ափերից հեռու: Այդ նշանակում է, որ իսպառ բնաջնջման մատնված փոկերին հնարավոր կլինի փրկել միայն այն դեպքում, երբ նրանց որսը արգելի Ատլանտյան օվկիանոսի որսի և ձկնորսության միջազգային կազմակերպությունը:

*Ռուսերենից թարգմ.*

*Տ. ԴԱՐԲԻՆՅԱՆ*

---

Օրբելին գիշեր ու ցերեկ չէր հեռանում Էրմիտաժից: Նրա ոգու արիությունը փոխանցվում էր բոլորին: Մի որոշ ժամանակով միայն ստիպված էր հեռանալ: 1942 թվի մարտին նա գալիս է Երևան՝ Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հիմնադրման աշխատանքներին մասնակցելու: Ակադեմիան հիմնադրվում է 1943 թվականի նոյեմբերին, և Հովսեփ Օրբելին ընտրվում է պրեզիդենտ: Հասարակական և գիտական պարտականություններով ծանրաբեռնված լինելով հանդերձ, Օրբելին միշտ կապ էր պահպանում Էրմիտաժի հետ, օգնում խորհուրդներով և ոգևորում: Լենինգրադի ազատագրումից հետո, Օրբելին նորից վերադառնում է Էրմիտաժ: Ռմբակոծություններից ավերվել էին մի քանի մասնաշենքեր, որոնք պետք էր նույնությամբ վերականգնել: Բացի այդ, անհրաժեշտ էր էվակուացված ցուցանմուշները վերադարձնել, դասակարգել և տեղավորել: Ծանր ու մանրակրկիտ այդ աշխատանքը Օրբելու գլխավորությամբ կատարվեց շատ արագ: 1945 թվի նոյեմբերի 4-ին Էրմիտաժի բոլոր 60 դահլիճները բացվեցին այցելուների առջև: Ամեն ինչ այնքան կատարյալ էր՝ վերականգնված ու ցուցադրված, որ կարծես Էրմիտաժի գլխով պատերազմական փոթորկոտ տարիներ չէին անցել: Պատերազմի ընթացքում Էրմիտաժի պահպանությանը մատուցած ծառայությունների համար՝ Օրբելին պարգևատրվեց Լենինի շքանշանով:

Այո՛, ոչինչ չի մոռացվել, ոչ ոք չի մոռացվել: Լենինգրադի պաշտպանության հերոսական տարեգրության մեջ անջնջելի կմնան Էրմիտաժի հերոսական դրվագները, և նրա հետ անխզելիորեն կապված Հովսեփ Օրբելու անունը:

ԳՐ. ՄԱԿՈՒՆՑ




# ԻՆՉՊԵՍ Է ՍՏԱՑՎՈՒՄ ԿԱԹԸ

Ամերիկյան Բոստոն քաղաքի դպրոցներում հարցաթերթիկներ են բաժանել, խնդրելով պատասխանել, թե ինչպես է ստացվում կաթը: Պարզվել է, որ աշակերտների համարյա կեսը կարծում է, թե գարեջրի և մրգահյութի պես՝ կաթը արհեստականորեն ստացվում է գործարաններում: Դպրոցների ղեկավարությունը անմիջապես էքսկուրսիաներ է կազմակերպել դեպի անասնապահական ֆերմաները, որպեսզի երեխաները տեսնեն, թե իրականում ինչպես է ստացվում կաթը:




## ՄՆԱՍ ԲԱՐՈՎ, ԴՊՐՈՑԱԿԱՆ ԶԱՆԳ

Լեհաստանի Պոզնան քաղաքի դպրոցներից մեկում, սովորական զանգին փոխարինել է լուսային ազդանշանը: Յուրաքանչյուր դասի սկզբում և վերջում՝ միջանցքներում ու դասարաններում վառվում են հատուկ լապտերներ:

Դպրոցի աշակերտներն ու ուսուցիչները շատ են հավանել այդ նորամուծությունը:

## ԹԻԹԵՌՆԵՐԻ ԱՅԳԻՆ



*Հազվագյուտ կենդանաբանական այգի կա Ավստրալիայի Սիդնեյ քաղաքի մոտ։ Այգու բնակիչները միայն թիթեռներ են։ Ներկայացված են Ավստրալիա աշխարհամասում եղած բոլոր 360 տեսակի թիթեռները։ Թիթեռները աճեցնում են այգու ինկուբատորում՝ տարբեր վայրերից հավաքված թրթուրներից և հարսնյակներից։ Այգում վանդակներ չկան, և թիթեռները ազատ կարողանում են թռչել։*

*Այցելուներին միայն մի պահանջ է ներկայացվում. իրենց հետ չվերցնել թիթեռ բռնելու ցանց։*

## ՍՊԻՏԱԿ ԱՐՋ

Երկրի ամենախոշոր գիշատիչը սպիտակ արջն է: Նրանցից ոմանք ունենում են մինչև 3 մ երկարություն և 1000 կգ. կշիռ: Եթե սպիտակ արջը ապրեր այնտեղ, ուր կան վագրեր և առյուծներ, նրան կհամարեին գազանների թագավոր:



Սպիտակ արջն ապրում է Հյուսիսային սառուցյալ օվկիանոսի կղզիներում: Սիրում է ճանապարհորդություն կատարել սառցաբեկորների վրա: Սնվում է այն ամենով, ինչ որսում է օվկիանոսում: Առանձնապես մեծ սեր ունի փոկի մսի նկատմամբ: Միանգամից կարող է ուտել 6—8 կգ, երբեմն՝ 20 կգ միս:

Ձագերի ծնվելուց առաջ՝ մայր արջը պատրաստում է քարանձավի նման որջ: Ձագերը ծնվում են ձմռան կեսին կամ վերջում:

Սպիտակ արջը լավ լողում է և սուզվում: Առանց ընդմիջման կարող է լողալ մինչև 20 կմ: Նրա մորթու մազերը այնքան խիտ են, որ ջուրը չի թափանցում: Այդ պատճառով էլ հյուսիսային սառը ջրերում նա չի մրսում: Մորթին սպիտակ արջին պաշտպանում է նաև բևեռային սառնամանիքներից:

## ԹՌՉՆԱԿԸ ԿԵՐԱԿՐՈՒՄ Է ՁԿՆԻԿԻՆ

Այս տեսարանը կարելի է դիտել ամեն օր Հյուսիսային Արիզոնայում: Կարմիր սարեկիկը թառում է լճակի եզրին և սկսում ճչալ: Ոսկե ձկնիկները մոտ են լողում և գլուխները հանում ջրից, նույնիսկ վեր ցատկում: Երբ կերը վերջանում է, թռչունը հեռանում է էլի ուտելիք բերելու: Երևի կարմիր սարեկիկը կորցրել է ճտերին և իր խնամքի տակ առել ձկնիկներին:



# ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

## «ՊԻՈՆԵՐ» № 1

### ԻՆՉ ԳԻՏԵՔ ԺԱՄԱՆԱԿԻ ՄԱՍԻՆ

1. Տարվա գաղափարը առաջին անգամ ծագեց Եգիպտոսում: Հին եգիպտացիների կյանքում բախտորոշ դեր էր խաղում Նեղոս գետը: Երկրագործական աշխատանքները բարեհաջող անցկացնելու համար անհրաժեշտ էր վաղօրոք իմանալ, թե երբ է սկսվում Նեղոսի վարարումը: Եգիպտական իմաստունները, որոնք միաժամանակ նաև աստղագետներ էին, նկատեցին, որ Նեղոսի վարարման սկիզբը համընկնում է Սիրիուս աստղի երևալուն: Աստղի երկու հայտնությունների միջև ընկած ժամանակահատվածն էլ կոչեցին տարի: Ներկա իմաստով դա այն ժամանակահատվածն է, որի ընթացքում Երկիրը մի լրիվ պտույտ է կատարում Արեգակի շուրջը:

2. Նոր տարին այն գոտիներում, որոնք ղեկավարվում են Մոսկվայի ժամանակով, սկսվում է այն պահին, երբ Կրեմլի աշտարակի ժամացույցը խփում է ժամը տասներկուսը: Նույն պահին այդ գոտուց արևմուտք դեռ շարունակվում է երեկվա օրը, իսկ արևելքում արդեն վաղուց նշում են նոր տարին: Սակայն երկրագնդի վրա պետք է լինի մի սահման, որը բաժանի երեկվա և այսօրվա օրերը:

Այդպիսի սահմանային գիծ, որը հայտնի է «Ամսաթվի փոփոխման գիծ» անվան տակ, միջազգային համաձայնությամբ ընդունված է 180 միջօրեականը: Այն անցնում է Դեժնյովի հրվանդանի մոտով, Բերինգի նեղուցով: Այնտեղ է սկսվում օրացուցային նոր օրը, տվյալ դեպքում՝ նոր տարին:

3. Սովետական Միությունում տասնմեկ անգամ են դիմավորում նոր տարին: Ամենից շուտ՝ Անադիրում և ամենից ուշ՝ Կալինինգրադում: Ի դեպ, Անադիրի, որը Չուկոտկայի կենտրոնն է, և Երևանի միջև գոյություն ունի 9 ժամվա տարբերություն:

4. Այն մարդիկ, որոնք Օվկիանիայի Սամոա կղզիներից դեպի Ավստրալիա են մեկնում, չեն կարողանում նշել նոր տարին, որովհետև Սամոայից դուրս գալով դեկտեմբերի 31-ին և անցնելով «Ամսաթվի փոփոխման միջազգային գիծը», հասնում են Ավստրալիա արդեն հունվարի 2-ին: Այլ խոսքով, դուրս գալով Սամոա կղզուց և անցնելով ժամանակի փոփոխման գիծը, նավապետը կարգադրում է 31-ի լույս գիշերը, որը պետք է լինի ամսի 1-ը, համարել 2-ը, որպեսզի մի օր ետ չընկնեն: Այս «կորուսյալ օրն» էլ հենց Սամոայից Ավստրալիա գնացողների նոր տարին է:

5. Այն ծովագնացները, որոնք գնում են Ավստրալիայից դեպի Սամոա, այլ խոսքով՝ արևմուտքից դեպի արևելք, երկու անգամ են նշում նոր տարին: Նավապետը կարգադրում է հունվարի 1-ի լույս գիշերը, որը պետք է լինի ամսի 2-ը, համարել կրկին 1-ը, որպեսզի մեկ օր առաջ չընկնեն: Հետևապես ունենում են երկու «հունվարի 1», հետևապես և երկու անգամ նշում նոր տարին:

6. Հին (հուլյան) և նոր (Գրիգորյան) տոմարների միջև գոյություն ուներ 13 օրվա տարբերություն:

1918 թվականի հունվարին Վ. Ի. Լենինը դեկրետ ստորագրեց Սովետական Ռուսաստանում Գրիգորյան օրացույց մտցնելու մասին: Այդ դեկրետով կարգադրվում էր 1918 թվականի հունվարի չորեքշաբթի օրվան հաջորդող հինգշաբթի օրը հաշվել ոչ թե փետրվարի 1-ը, այլ՝ 14-ը:

7. Երկար ժամանակ ամեն մի ժողովուրդ ուներ իր նոր տարին: Նման բազմազանությունը ժողովուրդների առևտրական ու կուլտուրական կյանքի փոխհարաբերություններում դժվարություններ էր առաջացնում: Տասնվեցերորդ դարի վերջերից սկսած՝ որոշվեց նոր տարվա սկիզբ համարել հունվարի 1-ը: Այդպես վարվեցին և Ռուսաստանում: Պետրոս Առաջինի հրովարտակով մունետիկները 1699 թվականի դեկտեմբերի 15-ին հաղորդեցին ժողովրդին, որ այսուհետև տարվա սկիզբը համարվելու է հունվարի 1-ը:

8. «Մոսկվայի ժամանակ» արտահայտությունը կապված է ժամացուցային դեկրետային երկրորդ գոտու հետ: Այսինքն այն գոտու, ուր գտնվում է Մոսկվա քաղաքը: Հայտնի է, որ Սովետական Միությունը բաժանված է 11 ժամային գոտիների (2-ից մինչև 12 ներառյալ), չնայած դրան երկաթուղու և հեռագրի ապարատում պահպանվում է Մոսկվայի ժամանակը:

Կ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Լույս է տեսնում 1923 թվականից

№ 2 փետրվար 1975 թ.



ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—37—90

ՎՖ 05065: Պատվեր 2345: Տպաքանակ՝ 81 600: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 30/I 1975 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 10 Կ. ԻՆԴԵՔՍ 77806



ՄԻՐԶՈՅԱՆ ԱՐԵԳ
Ստեփանակերտ, 3-րդ դաս. աշ.



ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ՍԱԹԻԿ
11 տ., Դիլիջան



ԲԱԼԱՅԱՆ ԱՐԱՄԱՅԻՍ
12 տ., Ստեփանակերտ

ԳԱԲՐԻԵԼՅԱՆ ՆՈՐԻԿ
12 տ., Արտաշատի շրջան, գյուղ Մրգանուշ

